



# ՈՃՔ

# ՅԱՏԿԱԲԱՆՈՒԹԻՒՆՔ

## ԱՌԱԿՔ

ԵՒ

## ՄԱՍՆԱՒՈՐ ԳԻՏԵԼԻՔ

ՖՐԱՆՍԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ





ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ

Յ. Թ. ՀԻՆԳԼԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

1886




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Անհակառակելի ճշմարտութիւն մ'է թէ լեզու մը լաւ գրելու, լաւ խօսելու համար բաւական չէ միայն տեղեակ ըլլալ նորա քերականութեան եւ գիտնալ բառեր․ լեզու մը գրելու եւ խօսելու համար այնպէս որպէս կը խօսի եւ կը գրէ զայն գործածող ազգն՝ պէտք է հմուտ ըլլալ նաեւ նորա ոճերուն, առակաց, յատկաբանութեանց եւ այդ լեզուին յատուկ խեղ մը մասնաւոր գիտելեաց:

Չկայ թերեւս եւրոպական լեզու մը որ Ֆրանսերէնի չափ ոճեր, յատկաբանութիւններ եւ առակներ ունենայ․ այն որ տեղեակ չէ ասոնց՝ խիստ թերի կերպով գիտցած կըլլայ յիշեալ լեզուն, եւ, յաճախ, գուցէ անկարող իսկ կըլլայ իւր գաղափարներն *Ֆրանսերէն* արտայայտելու, բերանացի թէ գրաւոր։

Եւ սակայն Ֆրանսերէն յատկաբանութեանց հաւաքածոյ մը հայերէն բացատրութեամբք, կը պակսէր եւ նորա պէտքն խիստ զգալի եղած էր Ֆրանսերէն ուսանողաց համար:

Ներկայ գործովս ջանացի ըստ կարի այդ պէտքը գոհացնել: Առանց շատանալու լոկ բացատրութեամբք՝ յաճախ օրինակներ եւս աւելցուցած եմ, որք բացատրութեանց գործը կը դիւրացնեն եւ աւելի լաւ ըմբռնել կուտան յատկաբանութեանց եւ ոճերու ոգին։

Ուսանողաց դիւրութեան համար գործն մաս առ




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Անհակառակելի ճշմարտութիւն մ'է թէ լեզու մը լաւ գրելու , լաւ խօսելու համար բաւական չէ միայն տեղեակ ըլլալ նորա քերականութեան եւ գիտնալ բառեր · լեզու մը գրելու եւ խօսելու համար այնպէս որպէս կը խօսի եւ կը գրէ զայն գործածող ազգն՝ պէտք է հմուտ ըլլալ նաեւ նորա ոճերուն , առակաց , յատկաբանութեանց եւ այդ լեզուին յատուկ խել մը մասնաւոր գիտելեաց :

Չկայ թերեւս եւրոպական լեզու մը որ Ֆրանսերէնի չափ ոճեր , յատկաբանութիւններ եւ առակներ ունենայ · այն որ տեղեակ չէ ասոնց՝ խիստ թերի կերպով գիտցած կըլլայ յիշեալ լեզուն , եւ , յաճախ , գուցէ անկարող իսկ կըլլայ իւր գաղափարներն *Ֆըրանսերէն* արտայայտելու , բերանացի թէ գրաւոր ·

Եւ սակայն Ֆրանսերէն յատկաբանութեանց հաւաքածոյ մը հայերէն բացատրութեամբք , կը պակսէր եւ նորա պէտքն խիստ զգալի եղած էր Ֆրանսերէն ուսանողաց համար :

Ներկայ գործովս ջանացի ըստ կարի այդ պէտքը գոհացնել : Առանց շատանալու լոկ բացատրութեամբք՝ յաճախ օրինակներ եւս աւելցուցած եմ , որք բացատրութեանց գործը կը դիւրացնեն եւ աւելի լաւ ըմբռնել կուտան յատկաբանութեանց եւ ոճերու ոգին ։

Ուսանողաց դիւրութեան համար գործն մաս առ

մաս հրատարակել յարմար դատեցի · Ներկայս առաջին մասը կը ներկայացնէ, միւսներն յաջորդաբար պիտի հրատարակուին :

Լիայոյս եմ թէ ներկայ երկասիրութիւնս պիտի կրնայ Ֆրանսերէն ուսանողաց մէկ իրական պէտքն իրապէս գոհացնել եւ արժանանալ քաջալերութեան, որով ապագային պիտի կարենամ վստահաբար ձեռնարկել աւելի կարեւոր երկասիրութեանց :

Յ. Թ. Հ.



# ՈՃՔ, ՃԱՑԿԱՐԱՆՈՒԹԻՒՆՔ, ԱՌԱԿՔ

ԵՒ

# ՄԱՍՆԱՒՈՐ ԳԻՏԵԼԻՔ

# ՖՐԱՆՍԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

## A

1. Etre marqué à l'A. — *Կ'ըսուի մէկու մը համար որ արժանի է վստահութեան, ազնիւ է։*

2. N'avoir pas fait une panse (a *նշանագրին առաջին կամարաձև գիծը*) d'a. — *Գրելիք բանին դեռ սկսած անգամ չ'ըլլալ։*

3. Ne savoir ni A ni B. — *Բնաւ բան չ'գիտնալ. բոլորովին տգէտ ըլլալ։*

A *նախադրութիւնը շատ կերպով կը գործածուի և տեսակ տեսակ ոճեր կը չինէ, որոց գլխաւորները հոս կը դնեմք.*

4. Ա. Ce livre est à ma sœur. Այս գիրքը քրոջս է։ A qui est ce cheval? Որո՞ւնն է այս ձին. — A

moi , à toi , à lui , à elle . . . Իմս , քուկդ . . . : C'est mon opinion , à moi. Իմ կարծիքս այս է ։ C'est mon ami, à moi. Իմ բարեկամս է:

5. Բ. Table à tiroir. Դարանով գրասեղան ։ Voiture à deux roues. Երկանիւ կառք ։ Chandelier à branches Ստեղով աշտանակ ։

6. Գ. Canne à sucre. Շաքարի եղէգ ։ Cuiller à soupe, à café. Ապուրի, խահուէի դգալ : Verre à boire. Խմելու (համար) գաւաթ : Pierre à aiguiser (ե-կիւիզէ). Յեսան :

7. Դ. C'est un avis à suivre. Հետեւելու խորհուրդ մ'է : C'est un homme à pendre. կախաղանի ար-ժանի մարդ մ'է ։ C'est une fille faite à peindre. Նը-կարուելու արժանի՝ այսինքն կարի չքնաղագեղ աղ-ջիկ մ'է : C'est un cheval à garder . C'est un livre à lire. Fou à lier . Facile à dire.

8. Ե. A bras ouverts. Թեւերը բացած: A la nage, Լողալով : A quatre pattes (marcher) . Չորս ոտքով (ոտքով ձեռքով քալել) ։

9. Զ. L'homme aux cheveux roux. Շիկագոյն մազերով մարդը : L'enfant aux yeux bleus . Կապոյտ աչուի տղան :

10. Է. Appelez l'homme aux cerises . կեռաս ծախողը կանչէ ։ Voici la femme aux œufs (Լօ պէտք

է հնչել, ինչ եղանին՝ եօֆ). Ահաւասիկ հաւկիթ ծախող կինը : La fille au beurre est déjà partie:

11. Ը. A le voir on juge de son état. Տեսնելով վիճակը կ'իմացուի : A ne considérer que telle chose Միայն այս բանը մտածելով, ի նկատի առնելով, եթէ այս բանը միայն ի նկատի առնուի : A compter de ce jour. Այս օրէն սկսելով, հաշուելով :

12. Թ. A coups de pierres. Քարերով, քարի հարուածներով, քար նետելով : A coups de fusil (հնչել Ֆիւզի) :

13. Ժ. Il fut immolé (իմմօ) aux yeux de son père. Հօրը աչաց առջեւ զոհուեցաւ :

14. ԺԱ. Passer au fil de l'épée. Սրէ անցնել :

15. ԺԲ. Mettre à feu et à sang. Այրել աւրել. (պատերազմի մէջ) ամէն տեսակ անգթութիւններ ընել :

16. ԺԳ. A regret. Ակամայ, չուզելով, տհաճութեամբ. Nous partons à regret. — A dessein. — Դիտմամբ. խորհրդով: Je l'ai fait à dessein.

17. ԺԴ. Chasse aux crocodiles. Կոկորդիլոսի որսորդութիւն. Chasse à l'ours blanc.

18. ԺԵ. A qui mieux mieux. Մրցելով. Ils dan-

saient à qui mieux mieux. Tirons à qui jouera le premier. Վիճակ ձգեցէք տեսնենք ո՛վ առաջ պիտի խաղայ: Voyons à qui l'aura. Տեսնենք ո՛վ պիտի առնէ, որո՛ւ պիտի ըլլայ: Disputer à qui obtiendra une faveur.

19. ԺԹ. A mon avis. Ըստ իմ կարծեաց, ըստ իս. A l'exemple des autres. Ըստ օրինակի այլոց, այլոց նման: A la française. Ըստ Ֆրանսականին, à l'anglaise, à la turque.

20. Ի. C'est à vous à, c'est à moi à *եւն.* *և* c'est à vous de, c'est à moi de *եւն միեւնոյն նշանակութիւնը չունին*: C'est à vous à parler, à jouer *կը նշանակէ* խօսելու, խաղալու կարգը քուկդ է: C'est à vous de parler *կը նշանակէ* քեզ կ'իյնայ, քեզ պատշաճ է, վայել է, անկ է, արժան է, քու պարտքդ է խօսիլ:

21. A *նախադրութիւնը յօդով մէկտեղ կը գործածուի, մէկտեղ ժողուած, տեղ մը ծախուած բաներու վրայ, կամ ամանի մը մէջ եղած նիւթին միտ դնելով խօսուած ատեն.* La halle au blé. Ցորենի վաճառանոց. La boîte au thé. Թէյով լեցուն տուփ. Le magasin au sel. La cruche à l'eau. Le pot au lait. La bouteille à l'encre: *Բայց երբ որ ամանի մը հասարակօրէն ինչ բանի գործածուելուն միտ դրուի՝ առանց յօդի* à *նախադրութիւնը կը գործածուի.* Achetez-moi une boîte à thé. Թէյ դնելու տուփ մը գնեցէք ինձ: *Իսկ երբ ամանի մը մէջ եղած նիւթին վրայ կամ պար-*

զապէս նիւթի մը չափին վրայ կը խօսուի՝ de դնելու է · Une boîte de thé · Տուփ մը թէյ· Prendre une tasse de café. Գաւաթ մը խահուէ խմել · Un pot de lait.

22· Երկու թուի մէջ à կը դրուի երբ իրենցմէ յետոյ եկած գոյականը բաժնուելու բան մը ըլլայ · իսկ եթէ չի բաժնուելու ըլլայ՝ ou · Cinq à six heures· Հինգ վեց ժամ · Dix à douze lieues· Cinq ou six personnes· Onze ou douze chevaux ·

En, à և dans, շատ տեղ գրեթէ նոյն նշանակութիւնը ունին, բայց գործածուած ատեն իմաստի փոփոխութիւն կուտան ·

23. En անորոշ իմաստ մը կուտայ, իսկ à և dans որոշ · à բանի մը ուր ըլլալը կը ցուցնէ, իսկ dans բանի մը մէջը ըլլալը · J'ai vécu en pays étranger, en Italie · Ils sont à la promenade · Iis sont au spectacle· Ce livre est dans la bibliothèque. Elle était dans sa chambre. Բայց շատ անգամ à և dans իրարու տեղ կը գործածուին, ուստի և կրնայ Il est à Paris կամ Il est dans Paris ըսուիլ ։

24· Վերը ըսածներէն կը հետեւի թէ քաղաքի անուններուն հետ աւելի dans և à կը գործածուի և գաւառի, տէրութեան անուանց հետ en· Դարձեալ յօդով բառերու հետ dans կը գործածուի և առանց յօդի բառերու հետ en ։

25· Ժամանակի վրայ խօսուած ատեն en բանի մը ո՛րչափ տեւելը կը ցուցնէ, իսկ dans բանի մը ե՛րբ

ըլլալիքը. այսպէս Il arrivera en trois jours կը նշանակէ երեք օր պիտի տեւէ ճամբորդութիւնը, երեք օրէն պիտի հասնի. մինչդեռ Il arrivera dans trois jours կը նշանակէ՝ երեք օր յետոյ, երեք օրէն պիտի հասնի ։

26. Ուրիշ զանազանութիւններ ալ կան որք վարժութեամբ կը սորվուին. զոր օրինակ. մէկու մը համար Il est en ville ըսելը տունը չ'է, դուրս ելած է ըսել է. Il est dans la ville ըսելը քաղաքին մէջ է, քաղաքէն դուրս ելած չ'է ըսել է, և Il est à la ville ըսելը բնակութիւնը քաղաքն է ըսել է.

ABATIS

27. Faire un abatis (դի), un grand abatis de gibier. — Որսի մէջ շատ անասուններ կոտորել ։

ABATTRE

28. Petite pluie abat grand vent (առակ) Պզտիկ անձրեւ մը ուժգին հով մը կը դադրեցնէ, այսինքն փոքր բանով մը մեծ կռիւ մը կամ բարկութիւն մը կը խաղաղի, կը դադրի ։

A B C

29. N'en être qu'à l'abc (ապէսէ). Դեռ ըսկիզբն, այբուբէնն ըլլալ. Il n'en est qu'à l'abc des mathématiques.

## AB HOC ET AB HAC

30. Ab hoc et ab hac (*ապ օգ էդ ապ ագ*).— *Առանց կանոնի, խենդ ու խելառ, անիմաստ, անհանճար խօսքեր ընել.* Que penser de ces critiques imberbes (*էմ*) qui parlent de tout ab hoc et ab hac?

## ABBÉ

31. Un abbé de cour. — *Պչրող եկեղեցական.* Le peuple n'aime pas généralement les abbés de cour.

32. Le moine répond comme l'abbé chante (առակ). — *Ստորակարգեալք իրենց գլխաւորին հաճելի թուիլ փափաքելով՝ միշտ նորա գործածած լեզուն կը գործածեն, անոր օրինակին կը հետեւին։*

33. Pour un moine on ne laisse pas de faire un abbé (առակ). — *Մէկ հոգւոյ հակառակութիւնն, ընդդիմախօսութիւնն գործոյն աւարտման արգելք չ'ըլլար։ Գրեթէ նոյն նշանակութիւնը ունի նաև*

34. Pour un moine l'abbaye (ապէի) ne manque pas առակն ։

## ABIMER

35. Abîmer. — *Այս բային բուն իմաստն է,*

խորտակել, գահավիժել. *բայց փոխաբերաբար կը գործածուի նաև նշանակելու համար*, ապականել, գէշցնել, ի կորուստ մատնել։ La pluie a abîmé mon chapeau. Des dépenses excessives l'ont abîmé. Cet homme est puissant et vindicatif, il vous abîmera.

### ABIME

36. Un abîme appelle un autre abîme. — *Չարիք մը իր ետեւէն ուրիշ չարիք մ'ալ կը բերէ։*

### ABOIS

37. Etre aux abois. — *Յետին նեղութեան, կարօտութեան մէջ ըլլալ. Յուսահատ կացութեան մը մէջ գտնուիլ.* Il n'a plus le sou, il est aux abois. Cette citadelle est aux abois: *Ոգեվարք ըլլալ.* Le malade est aux abois.

38. Réduire quelqu'un aux abois. *Մէկը սաստիկ նեղը դնել.* Ce n'est pas par des moyens ordinaires qu'on le réduirait aux abois.

### ABONDER

39. Abonder dans son sens. — *Յամառեալ կենալ իր կարծիքին վրայ։* — Abonder dans le sens de quelqu'un. *Մէկուն համակարծիք ըլլալ, ուրիշի մը կարծեաց յարիլ։*

### ABOYER

40· Tous les chiens qui aboient ne mordent pas (առակ). — Հաջան շունը խածան չըլլար, այսինքն ամէն սպառնացողէ վախնալու չէ։

41· Aboyer à la lune · — Ի զուր հզօրագոյնին դէմ աղաղակել։

### ABREUVER (s')

42· S'abreuver de larmes · Շատ արցունք թափել։ La pauvre femme s'abreuvait de larmes en voyant son fils blessé à mort.

### ABREUVOIR

43. Bon cheval va tout seul à l'abreuvoir (առակ) · — Կ'ըսուի մէկու մը համար որ անձամբ սեղանէն կ'ելնէ ջուր առնելու համար։

44 · Abreuvoir à mouches · — Սրոյ լայն եւ խորունկ հարուած։

Quand Hercule après maintes touches,
Lui fit un abreuvoir à mouches·

### ABRI

45· A l'abri · — Յապահովի ։ Dans une rade où

ils se trouvèrent à l'abri : — A l'abri de · — Ապահով, ազատ, զերծ (հողմէ, անձրեւէ, մրրկէ)։ Allons nous asseoir sous ce chêne, nous serons ainsi à l'abri de la pluie ·

### ABSENT

46· Les absents ont tort (առակ) · — Մարդ բացակայ ըլլալով կը կորսնցնէ այն շահերը զորս ձեռք պիտի ձգէր ներկայ ըլլալով։

47· Aux absents les os (լաւ է հնչել օ) · (առակ). — Բացակայք ամենէն փոքր մասը կ'առնուն. (սօնա գալան՝ տօնա գալըր)։

### ABSURDE

48· Réduire quelqu'un à l'absurde (ապսիւրտ) եւ ոչ թէ (ապզիւրտ, ինչպէս գէշ սովորութեամբ մը, կանոնաց հակառակ, կը հնչեն շատեր) · — Մէկուն խոստովանեցնել տալ թէ անիրաւ է · Rien ne sera plus facile pour moi que de l'amener կամ réduire à l'absurde.

### ACCEPTION, ACCEPTER

49. Faire acception de quelqu'un · — Աչառութիւն ընել։ La justice ne fait acception de personne·

50· Accepter l'augure . — Յուսացուածին պէս

*ըլլալը փափաքիլ։* Je crois que vous réussirez. — J'en accepte l'augure.

### ACCOMODER, ACCOMODER (S')

Ծա. Cela ne m'accomode pas. — *Այդ իմ գործիս, իմ բանիս չի գար։*

Ծբ. Accomoder quelqu'un de toutes pièces. — *Մէկուն համբաւը կոտրել, երգիծանօք խօսիլ մէկուն վրայ։*

Ծգ. Accomodez-vous, le pays est large. — *Անհանգիստ մի՛ ըլլաք (ծաղրանօք կ'ըսուի մէկու մը՝ որ իւր հանգստութեան հոգ կը տանի, առանց քաղաքավարական ձեւեր ի նկատի առնելու)։* — S'accomoder d'une chose. — *Բան մը գործածել իրենը եղածի պէս.* Il s'accomode de tout ce qu'il trouve sous sa main.

### ACCORD

Ծդ. Etre d'accord. — *Համամիտ ըլլալ։* Ils sont parfaitement d'accord entre eux. — Mettre d'accord. — *Միաբանել։* Mettre des gens d'accord. — En tomber d'accord. *Միաբանիլ։* Ils en sont tombés d'accord.

Ծե. D'accord. — *Կ'ընդունիմ, կը խոստովանիմ:* Eh bien! d'accord, j'ai commis une faute.

ACCOUCHER

56· C'est la montagne qui accouche · — Կ'ըսուի գործի մը համար որ մեծ աղմուկ կը հանէ և աննշան արդիւնք մը կ'արտադրէ ։

57· En faire accroire à quelqu'un· Խաբել ։ — S'en faire accroire· — Իւր անձին վրայ մեծ կարծիք ունենալ ։ Il a quelque (դոյզն ինչ) mérite, mais il s'en fait accroire·

ACCUSER

58· Accuser réception կամ la rèception d'une lettre· — Մէկուն նամակաւ իմացնել թէ՝ նամակը ձեռքը հասած է ։ J'ai l'honneur de vous accuser réception de votre lettre du 5 courant · (ամսոյս , ներկայիս 5ին ։

ACHEVER

59. Achever de· — Ցոլորովին , իսպառ · · · Le rude hiver des années dernières acheva de la dépouiller de ce qui lui restait de superflu·

60· Voilà pour l'achever de peindre · — Այս ալ վերջին հարուածն էր · (Ռամկօրէն կ'ըսեն՝ Այս ալ երեսային իւղն էր :

## ACHOPPEMENT

61 · Pierre d'achoppement · — Քար գայթակղութեան · — Խոչընդոտ ։ Il a été une pierre d'achoppement pour lui · — L'affaire sera bientôt terminée, si nous ne rencontrons pas quelque pierre d'achoppement.

## ACQUÊT

62·. Il n'y a point de plus bel acquêt que le don, — (առակ) . — Լաւագոյն ստացուածքն այն է՝ որ նուէր եղած, ձրիաբար տրուած է մեզ ։

## ACQUIT

63· Faire quelque chose par manière d'acquit· — Անհոգութեամբ, միայն ըրած ըլլալու համար բան մ'ընել ։ Il y a beaucoup d'inférieurs qui ne saluent leurs supérieurs que par manière d'acquit·

64· Faire quelque chose à կամ pour l'acquit de sa conscience · —Գործ մ'ընել պարզապէս խղճմտանքը հանդարտեցնելու համար ։

65. Faire l'acquit de sa charge. — Պաշտօնը հաւատարմութեամբ կատարել ։

### ACTE

66. Faire acte de présence. Վայրկեան մ'երեւիլ իւր պարտականութիւնը կատարելու կամ լոկ քաղաքավարութեան համար և անմիջապէս քաշուիլ։
Après avoir fait acte de présence, il se retira.

### ACTION

67. Rendre des actions de grâce. — Մեծապէս շնորհակալ ըլլալ։
On lui rendit des actions de grâce.

68. Avoir action contre quelqu'un. — Մէկուն դէմ դատ բանալու իրաւունք ունենալ։

### ADIEU

69. Dire adieu à quelque chose. — Հրաժարիլ։
Il dit adieu à la poésie, au monde, aux plaisirs.

Si la fièvre vient à redoubler, adieu le malade. (Հիւանդին գործը լմնցած է։)

### ADJUGER

70. S'adjuger quelque chose. — Իրեն վարձընել, իրեն առնուլ։

Il s'adjugea la meilleure part.

### ADMETTRE

71 · Cette affaire n'admet point de retard· — Այս գործը յապաղում չվերցներ ։

### ADMIRATION

72· Faire l'admiration, être l'admiration · — Սքանչեցնել ։

Il faisait l'admiration de tout le monde par sa sagesse·

### AD PATRES (Ասացուած լատիներէն որ նշանակութիւնն է՝ դէպ ի հարս իւր )։

73· Aller ad patres· — Մեռնիլ · — Envoyer ad patres. Մեռցնել ։

Il a pris un médicament qui l'a envoyé ad patres (ատ թաղրէս) · — Mais j'ai grand peur franchement que cela ne l'envoie ad patres·

### ADVENIR

74· Fais ce que tu dois, advienne que pourra

(առակ) — *Պարտքդ կատարէ, ինչ որ ալ պատահելու ըլլայ ։*

### AFFAIRE

75· C'est une affaire · — *Դժուարին է, դիւրին բան չէ ։*

J'avais bien affaire de cela!·—(*Չ'ըլլայ ալ նէ կ'ըլլայ* (ծաղրանօք) ։ )

76· J'en fais mon affaire. — *Ատոր յաջողութիւնը ինէ գիտցիր · ատոր հոգը ինծի թող ։*

77· Dites moi la place (պաշտօն) que vous sollicitez, j'en fais mon affaire·

78· Etre hors d'affaire· — *Հիւանդը վտանգը անցուցած ըլլալ ։*
Il est hors d'affaire, au dire du médecin· (*բժիշկին ըսածին նայելով*) ։

79· Avoir affaire à ··· — *Գործ ունենալ ։* — Si vous enfreignez les ordres que je viens de vous donner, (*հիմակուան ձեզ տուած հրամաններս*) vous aurez affaire à moi·

80. C'est votre affaire. — *Ձեր գիտնալու բանն է։*

81. S'attirer de mauvaises affaires. — *Գլխուն փորձանք բերել։*
Il faut agir avec prudence, j'ai peur que vous ne vous attiriez de mauvaises affaires.

82. Se tirer d'affaires. — *Դժուարութենէ պրծիլ։*
Il était bien embarrassé, mais il s'est tiré d'affaires.

83. Avoir affaire de quelqu'un, de quelque chose. — *Մէկուն, բանի մը պէտք ունենալ։* J'ai affaire de vous, ne sortez pas. — Il a affaire d'argent. — Qu'ai-je affaire de toutes ces querelles ?

84. Faire son affaire (à soi-même). — *Գործը յառաջ տանիլ, քալեցնել։* Il fait doucement son affaire.

85. Faire son affaire (à un autre). — *Պատժել, սպաննել։* L'espion fut découvert et on lui fit son affaire.

86. Aller à ses affaires, faire ses affaires. — *Ճէմիչ երթալ*, (գործի երթալ, *ինչպէս կ'ըսեն ռամկօրէն*).

87. Point d'affaire. — *Բնաւ երբէք։* — Des conseils tant qu'il vous plaira, mais de l'argent, point d'affaire.

88. Les affaires sont les affaires. — *Գործը ամէն*

*բանէ առաջ է։* Pardon si je vous quitte pour conférer un instant avec lui, les affaires sont les affaires.

89. Avoir affaire à forte partie. — *Ասացուած որ կը նշանակէ թէ՝ ինքզինք շատ բարեբաղդ համարելու է՝ եթէ այնչափով ազատի։*

90. Il n'est point de petites affaires. — *Ամենափոքր թշնամին ալ երբեմն մեծ նեղութիւն կուտայ, մեծ չարիք կը հասցնէ։*

91. Les affaires font les hommes. — *Խելացի մարդը՝ շատ մը գործեր ընելով ճարտար, ճարպիկ կ՚ըլլայ։*

AFFAMÉ

92. Ventre affamé n'a pas d'oreilles. (առակ) *Անօթի մարդը բանի մը մտիկ չ՚ըներ։*

AFFECTION

63. D'affection. — *Յօժարութեամբ. սիրով.* — Il en parle d'affection.

AFFICHER

94. *Այս բային բուն նշանակութիւնն է՝* ազդագիր դնել, հաստատել. *իսկ փոխաբերաբար կը նշա-*

նակէ՝ ձեւացնել. Afficher l'irréligion. Անկրօն ձե-ւանալ ։

AFFLIGÉ

95. Il est affligé de cent, mille livres de rente. Հարիւր հազար ոսկւոյ եկամուտ ունի (ծաղրանօք) ։ Il est affligé d'une santé robuste. — Զօրաւոր առող-ջութիւն ունի ։ — Elle est affligée de seize ans. — Այդ աղջիկը տասն և վեց տարեկան է ։

AFFRONT

96. Sa mémoire lui a fait un affront. — Խօս-քին թելը կորսնցուց. (կ՚ըսուի ատենաբանի մը, դե-րասանի մը համար) ։

AGE

97. Etre entre deux âges. — Ոչ ծեր ըլլալ և ոչ երիտասարդ ։

98. Etre sur l'âge. — Ծերացած ըլլալ ։
Il est sur l'âge; il ne peut plus marcher qu'en vacillant.

99. L'âge n'est fait que pour les chevaux. — (առակ) Մէկու մը գեղեցկութիւնը, ոյժը կամ առող-ջութիւնը իւր տարիքէն կախում չունի ։ (Այս պատաս-

*խանը կուտան անոր՝ որ մէկու մը տարիքը երեսին կու-տայ ։)*

100· Laissez faire à Georges, il est homme d'âge· *Ըսած մարդուս վարքին, խոհեմութեան և հնարագիտութեան վրայ վստահեցէք ։*

101· D'âge en âge· — *Ազգէ յազգ, դարուց ի դարս ։*

Le souvenir sera conservé d'âge en âge·

AGIR (S')

102· Il s'agit de...... *Խնդիր է ։* Il s'agit de savoir qui sera notre chef. Il ne s'agit pas de cela. — *Խնդիրը, խօսքը անոր վրայ չէ ։* De quoi s'agit-il?· *Խնդիրը, խօսքը ի՞նչ բանի վրայ է ։*

AGUETS

103· Etre *կամ* se tenir aux aguets· — *Դարանակալ ըլլալ· պատեհ վայրկենին սպասել ։* — Ils se tinrent aux aguets pour se saisir du voleur·

AHAN

104· Suer d'ahan· — *Տաժանելի, կնճռոտ գործ մ՚ընել ։*

Il sue d'ahan; il est presque désespéré.

## AIDE, AIDER

105· A l'aide! — Օգնութեան հասէ՛ք ։ — A l'aide! on m'assassine!

106· — A l'aide de · — Ի ձեռն , օգնութեամբ ։ — On a fait de grandes découvertes à l'aide du télescope.

107· Aide-toi, le Ciel t'aidera· (առակ) · — Դու անձիդ օգնէ՛, որպէս զի Աստուած ալ քեզ օգնէ ։ (Այսինքն եթէ կուզեմք որ Աստուած մեզ օգնէ՝ պէտք է որ զմեզ արժանի կացուցանեմք իւր օգնութեան մեր կամեցողութեամբ և ջանիւք ։)

108· Aller à la cour des aides · — Իւր բարկամներէն փոխ առնել։ (Մասնաւորապէս կ'ըսուի այն հեղինակաց համար որք իրենց գործոյն առանձին չ'են աշխատիր ։

109· Aider à la lettre · — Իրողութիւնները քիչ մը փոփոխել , քովէն բաներ աւելցնել , ունկնդիրներն խաբելու կամ զուարճացնելու համար ։

Il aide toujours à la lettre, toutes les fois qu'il raconte des aventures·

110. Dieu aidant. — Աստուծոյ օգնութեամբ , Աստուծով ։

111· S'aider de. — Գործածել ։
Il ne s'aide pas du bras droit·

### AIGUILLE, AIGUILLON

Chercher une aiguille dans une botte de foin — Գրեթէ անկարելի և միանգամայն անօգուտ փըն-տռտուքով ժամանակը կորսնցնել։

112. Disputer sur la pointe d'une aiguille. — Անկարեւոր, ջնջին բաներու համար հակաճառիլ։

113. De fil en aiguille. — Խօսելով խօսելով, ան-ըզգալաբար, կամաց կամաց։

De fil en aiguille, ils vinrent jusqu'à se quereller, jusqu'à se dire des injures.

114. Il vaut mieux être l'aiguillon que le bœuf. — (առակ) Լաւագոյն է հրամայել՝ քան հնազանդիլ։

### AIGUISER

115. Aiguiser l'appétit. — Ախորժակը բանալ։
Une promenade à grand air vous aiguisera l'appétit.

### AILE

116. Ne battre plus que d'une aile. — Վարկը կորած ըլլալ. հարստութենէ ինկած ըլլալ. ուժա-թափ եղած ըլլալ։

118. Tirer une plume de l'aile de quelqu'un. — Կերպով մը մէկէ մը շահ կորզել ։

191. Rogner les ailes à quelqu'un. — Մէկուն ազդեցութիւնը, պատիւը, իշխանութիւնը նուազեցընել ։ — On lui a rogné les ailes.

120. Voler de ses propres ailes. — Գործ մը առանձին կատարել, առանց ուրիշին օգնութեան ։

121. Vouloir voler sans avoir des ailes. — Կարողութենէն վեր գործեր տեսնել ուզել ։ Il veut toujours voler sans avoir des ailes ; aussi ne réussit-il presque jamais.

122. N'aller que d'une aile. — Գոհացուցիչ կերպով չյաջողիլ, (անհոգութեան, ծուլութեան պատճառաւ) ։

## AIMER

123. S'aimer dans un lieu. — Տեղէ մ'ախորժիլ ։ — Il s'aime à la campagne.

126. Qui aime bien, châtie bien. — (առակ) Շատ սիրողը՝ շատ խրատ կուտայ ։

## AIR

124. Etre en l'air. — Յուզուիլ ։ — Quand on apprit leur arrivée, toute la ville fut en l'air. — Խառն ի

խուռն ըլլալ։ — Dans son cabinet tout est en l'air. — Անհաստատ ըլլալ։ — Toute sa fortune est en l'air. —

125. Avoir toujours le pied en l'air. — Հակամէտ ըլլալ (մեկնելու, փախչելու, պարելու)։ — Les jeunes gens ont toujours le pied en l'air.

126. Prendre des airs, se donner de grands airs. — Անվայել, իւր աստիճանէն վեր ձեւեր բանեցնել։ — Que me déplaisent ces gens ridicules qui prennent des airs!

127. Des airs penchés, inclinés. — Կոտրտուք։ — Malfaiteur de Sauvagel ! C'était pour lui ces airs inclinés et toute l'adorable mollesse de ces simagrées.

128. En l'air. — Յախուռն, օդին մէջ։ — Paroles, menaces en l'air.

129. Conte en l'air. — Առասպել, սուտ։ — Ce ne sont que des contes en l'air.

130. Avoir l'air. — Երևիլ։ — Elle a l'air contente de ce qu'on vient de lui dire. — Cette pièce de monnaie a l'air d'être fausse.

### AIRAIN

131. Un front d'airain. — Անամօթութիւն, լրբութիւն։ Il faut avoir un front d'airain pour

oser soutenir une pareille fausseté.

132. Les bienfaits se gravent sur le sable, et les injures sur l'airain. (առակ) — *Նախատինք բնաւ չեն մոռցուիր, մինչդեռ բարեգործութիւնք մտքէ կ'ելնեն։*

133. Avoir un cœur d'airain. — *Անգութ ըլլալ։*

## AISE, AISÉ

134. Mettre quelqu'un à son aise. — *Համարձակութիւն տալ։* — Je n'osais vous parler de cela, mais vous me mettez à mon aise en m'en parlant le premier.

135. N'en prendre qu'à son aise. — *Միայն իր ուզած բանը ընել, առանց յոգնելու։* — C'est un sans — souci parfait; il n'en prend qu'à son aise.

136. Vous en parlez bien à votre aise ! *Դիւրին է խօսիլը. դիւրին դիւրին կը խօսիք, դուք որ ինծի պէս նեղութեան մէջ չ'էք։* (*Կ'ըսուի նաև* Cela vous est bien aisé à dire).

137. Un homme qui n'est pas aisé. — *Մարդ մը որուն հետ կենակցիլը դժուար է, իր դէշ բնաւորութեան պատճառաւ։*

138· A l'aise · — *Հանգիստ*. — On est fort à l'aise dans ce fauteuil.

139· Etre, vivre à son aise· — *Բարեկեցութեան մէջ ըլլալ, բարեկեցիկ վիճակ մ'ունենալ*։ — Cette famille est fort à son aise·

140· — Etre mal à son aise· — *Հանգիստ, բարեկեցիկ չըլլալ*· — *Տկարութիւն զգալ*։ Cette famille est mal à son aise.— Je suis mal à mon aise ce soir, je tremble.

141· Se mettre à son aise· — *Շատ համարձակութիւն ցուցնել*։

## ALCHIMIE

142· Faire de l'alchimie avec les dents· — *Ուտելիքէն կտրելով՝ քսակը լեցնել*։ — Voyez-vous cet homme sordide ? Il fait de l'alchimie avec les dents·

## ALGÈBRE

143· C'est de l'algèbre pour moi· — *Այս գըրուածքէն կամ այս խօսուածքէն բան մը չեմ հասկնար*։ (*Կ'ըսուի նաև* C'est de l'hébreu).

Ծանօթ. — *Ժ. դարու մէջ՝ Ժէրպէր Բ. Պապը իբր վհուկ նկատուեցաւ չափագիտութեան և մանաւանդ գրահաշւոյ հմուտ ըլլալուն համար. ասիկայ կը ցուցնէ թէ այդ դարու ժողովուրդն ի՛նչ գաղափար ու-*

նէր գրահաշւոյ վրայ, հետեւաբար վերի ասութիւնն դիւրաւ կը մեկնուի ։

## ALIGNER

144. Aligner ses phrases, ses mots . — Սեթեւեթեալ ոճով գրել, խօսիլ ։

## ALLEMAND

145. Une querelle d'Allemand. — Առանց պատճառի կամ չնչին բանի մը համար վիճաբանութիւն . — Il me cherche toujours des querelles d'Allemand.

146. C'est de l'allemand, du haut allemand pour moi . — Ադկէ բան մը չեմ հասկնար, ինծի համար չինարէն է այդ ։

## ALLER

Այս բայը՝ որ երթալ կը նշանակէ՝ շատ մը փոխաբերական իմաստներ ունի ։

147. Ա. — Ըլլալ (առողջութեան կողմանէ) ։ — Comment allez-vous . Ի՞նչպէս էք ։

148. Բ. — Բանիլ ( ժամացուցի , մեքենայի ) ։ — Ma montre ne va plus. — Ժամացոյցս չ'բանիր ։ — Cette machine va mal.

164. Faire aller quelqu'un ·— *Մէկը սուտ խոս-քերով յուսացնել, սուտ յոյսեր տալ մէկուն։* — Comme il le fait aller, en promettant de lui procurer l'emploi qu'il sollicite.

165. S'en aller · — Il s'en va onze heures. *Ժամը տասնմէկին մօտ է* ·— La chose s'en va faite. *Գործը լմննալու վրայ է* · — La carême s'en va fini. *Պահքը լմննալու մօտ է ։* — Il s'en va temps que je parte · — *Ժամ է որ մեկնիմ* ·

166. Au pis aller · — *Շատ շատ ։* — Au pis aller, nous reviendrons sur nos pas.

167. Va-t'en voir s'ils viennent ·— *Գնեհիկ ա-սացուած՝ որ կը նշանակէ՝* մի՛ վստահիր, յոյսդ անոր վրայ մի՛ դներ ։

168. Aller par haut et par bas ·— *Վերէն վարէն դուրս տալ ։* — Un remède qui fait aller par haut et par bas·

169. Aller à tout vent · — *Կ՚ըսուի մէկու մը համար որ հաստատամտութիւն չունի ։*

170. S'en aller d'une carte · — *Թուղթ մը խա-ղալ ։* — Je m'en suis allé de mon roi de pique·

ALLONGER

171. Allonger le pas · — *Մեծաքայլ երթալ ։*

**172.** Allonger le parchemin. — *Դատը երկնցը-նել՝ առաւել շահու դիտմամբ ։*

ALMANACH (*ալմանա*)

**173.** Je ne prendrai pas de vos almanachs. — *Քեզի խորհուրդ չ'պիտի հարցնեմ ։*

Ծանօթ. — *Երկար ժամանակ, եղան այնպիսիներ որք միայն օրացոյցներուն խորհուրդ կը հարցնէին և հաւատ կ'ընծայէին ։ Անկէ յառաջ եկած է վերի ասացուածը ։*

**174.** Son corps est un almanach. — *Ամէն անգամ որ օդը փոխուի՝ տկարութիւն մը կ'զգայ, այսինքն՝* շատ տկար կազմուածք ունի:

**175.** Faire des almanachs. — *Ցնորքներ երազել, ապագայ բաներ գուշակել ։*

**176.** C'est un almanach de l'an passé. — *Այլ ևս ատոր պէտք չ'կայ ։*

A L O I

**177.** Un homme de bas aloi. — *Գձուձ, ապատոհմ մարդ ։* — Marchandises de mauvais aloi. — *Գէշ ապրանք*

A L O R S

**178.** Alors comme alors (առակ). — *Այնատեն կը մտածուի, ճարը կը փնտռուի։*

Ծանօթ. — *Այս խօսքը կրճատումը կը թուի լի-նել* alors on agira comme alors le réclameront les circonstances *նախադասութեան ։*

### ALOUETTE

179· Il attend que les alouettes lui tombent toutes rôties dans le bec (առակ)· — *Կ'սպասէ որ ար-տոյտները խորոված բերանը իյնան ։ (Ծոյլի մը համար կ'ըսուի որ ամէն բան առանց աշխատելու ունենալ, ձեռք անցնել կ'ուզէ )։*

180· Si le ciel tombait, il y aurait bien des alou-ettes prises· (առակ) ·— *Եթէ երկինք կործանէր՝ անթիւ անհամար արտոյտներ կը բռնուէին ։ ( Կը գործածուի մէկուն անտեղի ենթադրութիւնը ծաղրելու համար) ։*

**ALPHA**, *ալփա (առաջին նշանագիր յոյն այբուբէնի).*

181· L'alpha et l'oméga (*լ'ալՓա է լ'օմէկա* ).— *Սկիզբը և վերջը ։* — Je suis l'alpha et l'oméga de toutes choses .

### A M E

182· Corps et âme ( գօռ. գ'է ամ) · — *Հոգւով մարմնով* — Il se donna à lui corps et âme ·

183· Dieu veuille avoir son âme · — *Աստուած ողորմի հոգւոյն ։*

184· Être l'âme damnée (*տանէ*) de quelqu'un· *Մէկուն կամակատար ծառայն ըլլալ· ամէն պարագայի մէջ կոյր գկուրայն մէկուն ուզածը ընել* ։— C'est son âme damnée·

185· Les âmes des pieds · — *Պարելու յարմար նուագարան* (*ջութակ ևլն*·) ։— Ces messieurs ont eu fantaisie de vous donner les âmes des pieds.

186· L'âme d'un soufflet · — *Փքոցին կաշին*։ — L'âme du soufflet a crevé.

AMEN

187· Dire amen · — *Հաւանութիւն տալ* ։— Il dit amen à tout·

188· Jusqu'à amen · — *Մինչև վերջը* ։— Il m'a tout conté, depuis pater (*բաթէռ* =հայր մեր) jusqu'à amen·

Ծանօթ· — *Յայտնի է թէ բոլոր եկեղեցական աղօթքներն* ամէնով *կը վերջանան. հետևաբար այս բառն* վերջի *իմաստով կը բանի* ։

AMENDE (*)

189· Faire amende honorable d'une chose · — *Հրապարակաւ յանցանքը խոստովանիլ և ներողութիւն*

---

(*) Amende, *«տուգանք»* , *չ'շփոթել* amande *ի հետ որ կը նշանակէ «նուշ»* ։

նխդրել ։ — Vous avez manqué aux égards qui lui sont dus, il faut que vous en faisiez amende honorable·

190· Les battus paient l'amende · (առակ) . — Զարչարուողներն, մնասուողներն են որ կը մեղադրուին , կ'անարգուին ։

Ծանօթ · — Հին ժամանակները՝ ինչպէս յայտնի է՝ իրաւունքը զօրաւորագունիններն ըլլալով՝ ծեծ ուտողները տուգանք կը վճարէին ։ Հաւանական է որ վերի խօսքն ալ անկէ ծագում առած ըլլայ ։

AMOUR

191· Pour l'amour de Dieu· — Աստուծոյ սիրոյն համար · — Ձրի ։ Faire quelque chose pour l'amour de Dieu · — On lui a donné cela pour l'amour de Dieu·

192· Pour l'amour de vous · — Ձեր սիրոյն համար (խաթրընըզ իչուն ) ։

193. Faire quelque chose comme pour l'amour de Dieu · — Այս խօսքը վերինէն բոլորովին տարբեր նշանակութիւն մ'ունի և կը նշանակէ՝ «Ձ'ուզելով, ակամայ ընել բան մը» ։

194· Il n'y a point de belles prisons ni de laides amours · (առակ) · — Առանց ազատութեան՝ ամէնէն գեղեցիկ տեղն ալ գէշ կ'երևի մեզ· սէրը զմեզ շրջապատող ամէն բան կը գեղեցկացնէ ։

*Ըսեմք հոս թէ* amour *բառը եզակիի մէջ* արական *և յոգնակիի մէջ* իգական *կը գործածուի սովորաբար ։*
Amour filial . — De folles amours.

## AMUSER

**195.** Amuser le tapis. — *Անօտի բաներով, խօսքերով ընկերութիւնը զբօսեցնել ։* — Il amusait le tapis pour gagner du temps. — S'amuser à la moutarde. — *Գլխաւոր բաները մէկ կողմ ձգելով՝ երկրորդական բաներով ժամավաճառ ըլլալ ։ (Պարզապէս* s'amuser *ալ կը գործածուի երբեմն այս իմաստով.*— Ne vous amusez pas, on vous attend. — Morbleu ! je suis bien sot de m'amuser à raisonner avec vous. S'amuser de quelqu'un. — *Մէկը ծաղրել ։* — On s'amusait de lui.

## AN , ANNÉE

**196.** Bon an, mal an. — *Բարեբեր և անբեր տարիները մէկտեղ հաշուելով. իրարու վրայ ։* — Bon an, mal an, ce pré lui rapporte tant de foin. — Sa profession lui rapporte 4000 francs, bon an, mal an.

**197.** Cent ans n'est guère, mais jamais c'est beaucoup. — *Հարիւր տարին ինչ որ է , բայց երբեք՝ շատ է ։ ( Կ'ըսուի ի պատասխանի մէկու մը որ բարկութեանը մէջ կ'ըսէ թէ երբեք այն ինչ տեղը ոտք չ'պիտի կոխէ , այն ինչ մարդը չ'պիտի տեսնէ երբեք իւր կենաց մէջ ) ։*

198· Je m'en soucie, je m'en moque comme de l'an quarante · — *Բնաւ հոգս չէ ։*

### ANALYSE

199· En dernière analyse · — *Հուսկ հետեւու-թեամբ ։* — Je ne vois pas, en dernière analyse, quelle utilité si grande on peut tirer de cette découverte·

### ANCIENNETÉ

200· De toute ancienneté ·— *Հին ժամանակներէ ի վեր ։* — Cela s'est fait de toute ancienneté·

### ANCRE, ANCRER (S')

201· Lever l'ancre.— *Ելնել երթալ, հեռանալ ։*

202· Jeter l'ancre sacrée . — *Վերջին միջոցներուն դիմել ։*

Ծանօթ · — *Նախնեաց մէջ* ancre sacrée *ն (սրբազան խարիսխ)՝ միւս խարիսխներէն աւելի ուժով էր, որ դից նուիրեալ և վտանգայից կացութեանց վերապահեալ էր ։*

203· S'ancrer quelque part · — *Տեղ մը հաստատուիլ՝ այնպէս որ բռնութեամբ միայն կարելի ըլ-*

լայ անկէ հանել ։ — Il s'est ancré dans cette maison.

## ANE

204. Brider son àne par la queue. (առակ). — Գործ մը ծուռ ընել ։ — Il y aura de l'âne. — Սխալ բաներ պիտի ըլլան ։— C'est une entreprise hasardée; il y aura de l'âne.

205. Faire l'âne[1] pour avoir du son[2] (առակ).— Ինքզինքը խենդ, տխմար ձեւացնել ստակ վաստկելու, շահ մը ձեռք ձգելու համար ։ — Seriez-vous assez naïf pour vous tromper de ses paroles? — Il fait l'âne pour avoir du son.

206. Chercher son àne quand on est dessus. — (առակ). Անուշադրութեամբ փնտռել բան մը որ իւր վրայ, իւր ձեռքն է ։ (Էշէյէ պինմիշ օլմագ վէ էշէյի արամագ) ։

207. Un bon serviteur doit avoir des oreilles d'âne. (առակ). — Լաւ ծառայ մը պէտք է որ ամէն բան լսէ իւր տիրոջմէն, եւ, առանց ընդդիմախօսելու ։

208. Fautte d'un point Martin perdit son âne.— (առակ). Շատ անգամ ամենափոքր բանէ մը յաջողութիւն կը ծնի ։

---

(1) Faire le . . . կը նշանակէ՝ «ձեւացնել, կեղծել». Il fait le savant.

(2) Son հոս գոյական է և կը նշանակէ «ցորենի թեփ» (կէպէկ) ։

209. Un âne bâté. — *Շատ աղէտ ։* — Diantre soit de l'âne bâté.

210. L'âne du commun est le plus mal bâté. — (առակ). *Հասարակաց ծախուց մասնակցելու շատ փոյթ չ'տարուիր ։*

211. A laver la tête d'un âne *կամ* d'un More on perd sa lessive. (առակ). —*Խենդը խրատն ի'նչ գիտէ, սեւը սապոնն ի'նչ ընէ ։*

212. C'est l'âne couvert de la peau du lion. — *Կ'ըսուի կեղծ քաջի մը համար որ ինքզինքը քաջասիրտ կը ձեւացնէ ։*

213. Traître comme un âne rouge. — *Մատնիչ մը ։*

214. Il ressemble à l'âne de Buridan. — *Բուրիդանայ իշուն կը նմանի, այսինքն՝ որոշում մը չ'կրնար տալ թէ երկու կողմանց ո'րը ընտրէ ։*

**Ծանօթ.** — *Բուրիտան, նշանաւոր տրամաբան եւ վարիչ Բարիզի ակադեմիային ԺԴ. դարուն մէջ, ականաւոր հանդիսացաւ հետեւեալ իմաստակութեամբ. «Անօթի և ծարաւի էշ մը դոյլ մը ջրի և չափ մը լի վարսակի մէջտեղ կը գտնուի ։ Ի'նչ պիտի ընէ ։ » Գրագիտութեան մէջ յաճախ կ'ակնարկեն Բրուտանի էշը ։* — Voilà la Suède, de menaçant, quelle était autrefois, devenue mesurée; la voilà embarrassée de sa liberté et indécise entre l'Angleterre et la France, comme l'âne

de Buridan entre deux mesures d'avoine. »

### ANGE

**215.** Rire aux anges. — *Առանց պատճառի ապուշ ապուշ խնդալ։* — Voyez ce niais qui rit aux anges.

**216.** Être aux anges. — *Յետին աստիճան ուրախ ըլլալ։* — L'enfant embrassait sa mère qu'il n'avait pas vue depuis dix ans; il était plus que joyeux, il était aux anges.

**217.** Comme un ange. — *Սքանչելի կերպով։* — Il écrit, il parle, il chante, il danse comme un ange.

### ANGUILLE

**218.** Il y a quelque anguille sous roche. — *Գործին մէջ գաղտնի բան մը, որոգայթ մը կայ։*

**219.** Ecorcher l'anguille par la queue. — *Ծուռ գործ մը տեսնել. վերջացնելիք տեղէն սկսիլ։ (Համազօր է* Brider son âne par la queue *ին)։*

**220.** C'est l'anguille de Melun, il crie avant qu'on l'écorche. (առակ). — *Դեռ չարիքը, վնասը չ'տեսած կը պոռայ։*

**Ծանօթ.** — *Այս առակին* anguille *ը* anguille (*օձաձուկ*) *չ'է։ Կը կարծուի թէ Մըլօնցի մը ըլլայ, որ*

Ս. Բարդուղիմէոս անձը ներկայացնելու պաշտօնը ըս-տանձնած է, Ս. Բարդուղիմէոսի որ՝ ինչպէս յայտնի է՝ ողջ ողջ մորթուեցաւ ։ Այս Մէլօնցին կ'ենթադրուի որ իւր տանջանքը չ'կրած պոռալու սկսած ըլլայ ։ Ահա այս կրնայ ըլլալ յիշեալ առակին մեկնութիւնը ։

## ANNEAU

221. Songez à l'anneau de Polycrate. — Այս խօսքը կ'ուղղուի երջանկութիւն վայելող մէկու մը, յի-շեցնելով անոր թէ՝ երջանկութիւնը այս աշխարհիս մէջ կատարեալ չ'ըլլալով՝ պէտք է զգուշանալ ։

## ANSE

222. Faire danser l'anse du panier. — Մատա-կարարներու և խոհարարներու համար կ'ըսուի՝ որք իրենց տիրոջ համար գնած ուտեստներէն ապօրինաւոր շահեր կ'ընեն ։ — La plupart des pourvoyeurs et des cuisinières font danser l'anse du panier.

223. Faire le pot à deux anses. — Կռուելու համար կամ առ ի գոռոզութենէ ձեռքերը մէջքին դը-նել ։ — Qui est le vainqueur de ces deux querelleurs? Celui qui a fait le pot à deux anses.

## ANTICHAMBRE

224. Faire antichambre. — Նախասենեակը ըս-պասել, տան տէրը տեսնելու համար ։ — Nous avons fait antichambre pendant plus d'un quart d'heure.

## ANTIPODE

225. Envoyer quelqu'un aux antipodes․— Մէկը վանել, հալածել ։ — Où est votre serviteur? — Le fourbe ! je l'ai envoyé aux antipodes.

## ANTRE

226․ Paraître sortir de l'antre de Triphonius․— (առակ) ․ Լուրջ, կասկածոտ կերպարանք մ'ունենալ ։

Ծանօթ ․ — Թրոֆոնիուսի քարայրը հնոյն Յունաստանի մէկ քարայրն էր, նշանաւոր իւր պատգամներով ։ Նոքա որ այս քարայրին խորհուրդ կը հարցնէին բոլոր իրենց կենաց մէջ մելամաղձոտ կը մնային, ինչ որ ըս-կիզբն եղած է վերի առակին ։

## APLOMB (աբլօն)

Սոյն բառին բուն նշանակութիւնն է ուղղաձիգ գիծ ․ իսկ փոխաբերաբար կը նշանակէ նաև համարձակութիւն ։ — Cet acteur a un aplomb étonnant ․

227․ Etre d'aplomb ․ — Ոտքերուն վրայ հաստատ կենալ ։

## APOTHICAIRE

228․ Compte d'apothicaire ․— Կէսուակէս վրայ-դիրքով հաշիւ ։ — C'est un compte d'apothicaire; il y a beaucoup à rabattre․

229. Apothicaire sans sucre . — Այս անունը

կուտան անոր՝ որ իւր պաշտօնին պահանջած բաները չունի։

**Ծանօթ**. — Առտենօք չաքարը իբր դեղ կը նկատուէր և միայն դեղագործներուն քով կը գտնուէր։

**230.** Un quiproquo d'apothicaire. — Վնասակար, վտանգաւոր սխալ։

**231.** Faire de son corps une boutique d'apothicaire. — Շատ դեղ առնել։ — Cet homme est malade depuis longtemps; il a fait de son corps une boutique d'apothicaire.

### APOTRE

**232.** Un-bon apôtre. — Լաւ խաբելու համար ուղղամիտ և անկեղծ մարդու կերպարանք առնող։ Կ'ըսեն Faire le bon apôtre.

> Tout Picard que j'étais, j'étais un bon apôtre,
> Et je faisais claquer mon fouet tout comme un autre.

### APPARENCE

**233.** Sauver les apparences. — Թէև անկարգ կեանք մը վարել, բայց դրսէն երևելի բան մը չը ցուցնել։ — C'est une femme galante qui sauve les apparences du mieux qu'elle peut. (կրցածին չափ լաւ)։

## APPEL, APPELER

234. Faire un appel à ...... — *Հրաւէր կարդալ, դիմել։* — Faire un appel à la générosité de quelqu'un, à la charité publique.

235. Appeler les choses par leur nom. — *Պարկեշտութեան կամ բարեվայելչութեան արգիլած բառերը գործածել արձակ համարձակ։* — C'est une grande impolitesse que d'appeler les choses par leur nom.

236. En appeler à. — *Բողոք բառնալ. դիմել։* — J'en appelle à votre témoignage. J'en appelle à votre probité, à votre sagesse.

237. Un visage d'appelant. — *Տժգոհութիւն ազդող դէմք մը։*

238. Il n'est chère que d'appétit. — *Անօթութիւնը լաւագոյն համեմն է կերակրոյ։ (Ռամկօրէն կ'ըսեն «անօթի մարդը քար ալ գտնէ կուտէ»)։*

Ծանօթ. — Chère *հոս կը նշանակէ՝ կերակուր, ինչպէս* faire bonne chère *ի մէջ որ կը նշանակէ՝ «աղէկ մ'ուտել, խմել».* n'est *էն ետքը ըսելեայն պէտք է իմացուին* pas de meilleure *բառերը և* que *էն ետքը* celle, *որ կ'ըլլայ՝* il n'est pas de meilleure chère que celle d'appétit.

APPÉTIT

239· L'appétit vient en mangeant ·— Մարդ որ- չափ շատ ունենայ, այնքան աւելի ունենալ կ'ուզէ ·—

240. Bon appétit·—Բարի, լաւ. ախորժակ։ (Կ'ըսուի անոր որ կուտէ կամ ուտելու կը պատրաստուի)։

241. Demeurer sur son appétit·— Իր ցան- կութեանց չափ դնել։

242. Avoir l'appétit ouvert de bon matin·— Խիստ կանուխէն ուզել բան մը։

243· A l'appétit de·— Սիրոյն համար։— Il a laissé tomber le mur à l'appétit dc quelques centaines de francs qu'il fallait dépenser pour le réparer·

APPLICATION, -APPLIQUER

244. Se faire l'application de...... — Իր վրայ առ- նել (խօսք մը, եւն)։— Il est si défiant, si soupçon- neux, qu'il se fait l'application de tout ce qu'on dit· (Կ'ըսուի նաև s'appliquer)·

245· Appliquer un homme à la question·— Մէ- կը տանջանքի ենթարկել բերնէն խօսք առնելու համար։ On appliqua le voleur à la question·

Այս բայը՝ առանց խնդիրի՝ կը նշանակէ ուշա- դրութիւն պահանջել։— Les échecs appliquent beau- coup· Ճատրակը (սաթրանճ) մեծ ուշադրութիւն կը պահանջէ։

246· S'appliquer quelque chose. — Ինքզինքին վար դնել։ Il *s'applique* les émoluments dus au travail d'autrui. Կրնայ գործածուիլ նաև փոխաբերաբար։ —Իւր վրայ առնել։ Un avare *s'applique* rarement ce qu'il entend dire contre l'avarice.

### APRÈS

247· Etre toujours après quelqu'un. —Մէկը աշխատեցնել, նեղել։ Cet homme *est toujours après* ses domestiques.

248· Être après quelque chose. —Բանի մը պարապիլ, բանի մը ետեւէ ըլլալ։ Je *suis après* à écrire.

249· Après coup. —Բանը բանէն անցնելէն ետև։ Vous voulez produire des pièces (վաւերական թուղթեր մէջ բերել) quand votre procès est jugé; c'est venir *après coup*.

250· L'année d'après. Երկրորդ տարին։ Le jour d'après· Երկրորդ օրը։

### ARAIGNÉE

251· Broder des toiles d'araignée. —Իմաստակաբանել։ Babyle a brodé *des toiles d'araignée* comme un autre.

### ARBRE

252· Faire l'arbre fourchu. —Ձեռքերուն վրայ

*գլխիվայր կենալ։* Regardez cet écolier qui *fait l'arbre fourchu.*

ARC, ARÇON

253· Débander l'arc ne guérit pas la plaie (առակ)։ —*Կորուստը դարմանելու համար ձեռք առնուած միջոցներն անօգուտ են։*

Ծանօթ· —*Ըրնէ տ'Անժու, Թագաւոր Սիկիլիոյ, կորուսած ըլլալով իւր կինն, և ուզելով ցուցնել թէ յաւէտ պիտի սիրէր զայն, վերի աստացուածն ընդունեց իբր նշանադրոշմ՝ որ բրթած լարով աղեղ մը կը ներկայացնէր։*

254· Perdre les arçons. —*Ձիէն իյնալ.* —*Խռովիլ, շփոթիլ։*

255· Être ferme sur ses arçons. —*Իւր կարծեաց, սկզբանց մէջ հաստատ մնալ։*

ARÊNE

256· Descendre dans l'arêne. —*Վիճաբանութեան մտնել։* Il ne faut point *descendre dans l'arêne* avec un homme si méprisable.

ARGENT

257· Payer argent sec, bas, sur table. —*Անմիջապէս, կանխիկ վճարել։*

258· Prendre quelque chose pour argent comptant. Ըսուած բանի մը հաւատալ առանց զայն քննելու, առանց նորա ճշմարտութեան վրայ համոզուիլ ուզելու։

259· Qui a de l'argent a des pirouettes (առ.ակ)։ —Ով որ դրամ ունի, ամէն բան ունի (փարայը վէրէն տիւտիւյի չալար)։

260· Faire de l'argent. —Ստակ շահիլ։

261· Argent mignon. —Պատրաստ դրամ զոր մարդ կրնայ գործածել ըստ հաճոյս իւր։ J'avais en poche quatre francs pour *argent mignon,* que je gardais soigneusement.

262· Qui a assez d'argent, a assez de parents (առ.ակ)։ Հարուստ եղած ատենդ ազգականներէդ շատերը քեզ կը փնտռեն, որք երեսդ անգամ չեն նայիր աղքատ եղած ատենդ։

ARME

263· Faire des armes. —Սուսերամարտութիւն սովրիլ։

264· Être sous les armes. —Զէնքը ձեռքը պատրաստ ըլլալ. —Պատրաստ ըլլալ. —Շատ զարդարուած ըլլալ (կնոջ վրայ խօսելով)· Le roi mena l'électeur de Bavière dans le salon; toutes les dames y *étaient sous les armes* (հագուած սգուած էին)։

265· Ce sont les armes de Bourges (առակ)։ —*Կ'ըսուի տգէտի մը համար որ թիկնաթոռին վրայ բազմած՝ է, մինչդեռ զինքը շրջապատող արժանեաց տէր մարդիկ պարզ աթոռներու վրայ նստած են։*

266· —Les armes sont journalières· —*Պատերազմի մէջ՝ յաջողութիւնը միշտ մէկ կողմը չ'ըլլար ։ երբեմն կը զարնես, երբեմն կը զարնուիս ։*

267· Faire arme de tout. —*Ամէն միջոց ի գործ դնել։*

ARROSER

268· Arroser ses créanciers. —*Պահանջատեարց մէկ մէկ փոքրիկ գումար տալ՝ բերաննին գոցելու համար։*

ARTICLE

269· C'est un autre article. —*Յանձն չեմ առներ, չեմ ընդունիր, չեմ հաճիր·* Je veux bien lui prêter ces livres; mais les lui donner, *c'est un autre article.*

270· A l'article de la mort. —*Մեռնելու ատեն։* Il ne faut pas attendre *à l'article de la mort* pour faire son testament.

ARTIFICE

271· Feu d'artifice. —*Հրախաղութիւն (Ֆիշէնք)։* On a tiré des *feux d'artifice* à l'occasion de l'anniversaire du roi.

### AS

272· As de pique. —Զարալեզու, փուճ արարած ։ Taisez-vous, *as de pique.*

### ASINUS

273· Asinus asinum fricat. —Ասացուած լատի-ներէն որ կը նշանակէ՝ էշ չէէ չէշ։ Այս խօսքը կ'ուղ-ղուի երկու անձանց որք զիրար չափազանց կը գովեն ։

### ASSAUT

274· Faire assaut de (savoir), d'(esprit), de (plaisanterie). —Իրարու հետ մրցիլ թէ ո՛վ գիտու-թեան, խելացիութեան, կատակի մէջ պիտի գերա-՚զանցէ ։ Il me plaît beaucoup de voir des jeunes gens qui *font assaut d'esprit.*

### ASSEMBLER (S')

275· Qui se ressemble, s'assemble (առակ). —Նման զնմանն սիրէ (չար միտքով կը բանի). Il ne tarda pas à se lier étroitement (սերտ բարեկամու-թիւն մը հաստատել) avec ce fripon : *qui se ressem-ble, s'assemble.*

### ASSEOIR

276· Asseoir un camp. (քան) —Բանակ հաստա-տել ։ *Il assit* son *camp* près du fleuve.

### ASSIDU

277· Assidu, որ կը նշանակէ ժրաջան, միշտ մէկուն հետ գտնուող, մէկուն քով գտնուող, մարդու անունները auprès նախադրութեամբ, իսկ իրի անուններն ու բայերը à ով խնդիր կ'առնէ։ Assidu *auprès du* prince..—Assidu *à* son travail. Il était assidu *à* prier avec lui.

### ASSIETTE

278· Piquer l'assiette. —Սովորաբար ուրիշներուն տունը կերակուր ուտել, հացկատակութիւն ընել։ Ce célibataire dépense très peu pour nourriture; il *pique l'assiette.* Կայ նաև գոյական մը piqueur d'assiettes, որ կը նշանակէ հացկատակ (parasite).

279· Perdre l'assiette. —Հաւասարակշռութիւնը կորսնցնել (ձիաւորի վրայ խօսելով)։

280· Un casseur d'assiettes. —Ճոռոմաբան, անձնապարծ։

### ASSISTER

281· Dieu vous assiste. Աստուած տայ. (Կ'ըսուի աղքատի մը՝ որուն տալու բան մը չենք ունենար կամ չենք ուզեր տալ)։

### ASSURER

282· Այս բայը կը նշանակէ ապահովել, հաստատել.

կը նշանակէ նաեւ կտակով ձգել։ Il *assura* tous ses biens à son neveu, après sa mort.

283· S'assurer de quelqu'un. —Մէկը վստահիլ, իրեն կողմը ձգել։ Les voleurs l'auraient tué, s'il ne s'était pas *assuré* du chef des brigands.

284· S'assurer de quelque chose. —Առաջուց բռնել։ Je me suis *assuré* d'une barque.

ATHÉNIENS

285· O Athéniens, que vous êtes Béotiens ! (սիէն)։ —Ո՛վ հանճարեղ մարդիկ, երբեմն որքա՛ն կ'անմտիք։ (Կ'ըսուի խելացի անձանց՝ որք անխոր-հուրդ գործեր կ'ընեն)։

Ծանօթ. —Աթենացիք Յունաստանի ամենէն հան-ճարեղ մարդիկներն էին, իսկ Բէովտիացիք՝ ամենէն անմիտներն։ Յարդ Ատտիկէ՝ կը ներկայացնէ նրբա-մտութեան, և Բէովտիա՝ անմտութեան։

ATTACHER

286· Սովորական նշանակութիւնն է կապել, կցել, փակցնել։ Կը նշանակէ նաեւ յինքն ձգել, յանկուցանել։ Les fables ne m'*attachent* pas. Զբաղեցնել։ Il a une affaire qui l'*attache* fort.

287· Attacher les yeux, les regards. —Աչքերը բանի մը վրայ տնկել։ —Աչքերը քաշել, յինքն ձգել։ L'enfant *attachait les yeux* sur les confitures. —Ce spectacle *attachait nos regards.*

### ATTEINTE

288· Hors d'atteinte. —*Զբռնուելու չափ հեռու, անհասանելի*։ Le fugitif est maintenant *hors d'atteinte*. Vous avez mis cela tout à fait *hors d'atteinte*, je ne pourrai jamais le saisir.

### ATTENDRE

289· En attendant. —*Մինչեւ այն ատեն, մինչեւ որ*... Il se mit à lire *en attendant*. *En attendant*, nous nous promènerons· Votre frère me rapportera le livre dans une demie heure; je vais, *en attendant*, copier ma lettre.

### ATTRAPER

290· Attraper une fièvre, un rhume, *եւ*. —*Ջերմէ, հարբուխէ բռնուիլ*։

291· Y attraper. —*Յանկարծակիի բերել, բռնել*։ Que je vous *y attrape* encore à venir voler mes raisins. (*Չ'ըլլայ թէ մէկ մ'ալ խաղողներս գողնալդ տեսնեմ*)։ Vous disiez que vous n'alliez jamais au café: je vous *y attrape*.

### AUGIAS

292· Les écuries d'Augias. —*Այսպէս կ'անուանեն տեղ մը ուր դիզուած են աղտեղութիւնք* (*թէ՛ բնապէս և թէ՛ բարոյապէս կը գործածուի*)։

Ծանօթ. —*Աւգիաս թագաւորն ընդարձակ գոմեր ունէր, ուր կը գտնուէին 3000 եզներ, և որք երեսուն տարիէ ի վեր բնաւ մաքրուած չէին։ Հերակլէս Ալփէոս գետն անցուց անոր մէջէն, որով աղտեղութիւնք մաքրուեցան։*

## AUJOURD'HUI

293· D'aujourd'hui. —*Առաւօտէն ի վեր։* Je ne l'ai point encore embrassé *d'aujourd'hui.*

294· D'aujourd'hui en huit, en quinze. —*Շաբաթէ մը, երկու շաբաթէն։*

## AUNE

295· Tout le long *կամ* tout du long de l'aune. —*Սաստիկ, չափազանց։* On l'a battu *tout du long de l'aune.*—C'est vraiment la tour de Babylone,
Car chacun y babille, et *tout le long de l'aune.*

296· Mesurer les autres à son aune. —*Ուրիշները իւր անձին վրայ չափել։* Il ne faut pas *mesurer* les autres *à son aune.*

297· Savoir ce qu'en vaut l'aune. —*Գիտէն շատ բաներ անցած ըլլալ, շատ բաներ տեսած ըլլալ, փորձառու ըլլալ։* Comme j'ai passé par les grandeurs et les richesses, je sais *ce qu'en vaut l'aune.*

298· Avoir toujours dix aunes de boyaux de ides. —*Միշտ անօթի ըլլալ։ (Կ'ըսուի մանաւանդ տղոց համար)։*

299· Les hommes ne se mesurent pas à l'aune. *—Խելացիութիւնը և բարութիւնը հասակէ կախում չունին։*

### AUSSITÔT

300. Aussitôt dit, aussitôt fait. *—Ըսելը և ընելը մէկ եղաւ։*

### AUTANT

301· Autant qu'il est en moi, autant qu'il était en eux. *—Ձեռքէս եկածին չափ, ձեռքերնուն եկածին չափ։* Je tâcherai, *autant qu'il est en moi,* de le débarrasser de cet état fâcheux.

302· Boire d'autant. *—Շատ գինի խմել։* Ne songeons plus qu'au plaisir, et *buvons d'autant.*

303· D'autant que. *—Մանաւանդ թէ։* A votre place, je n'irais point là, *d'autant que* rien ne vous y oblige.

304· Autant de têtes, autant d'avis. (առակ) *—Որչափ մարդիկ այնչափ կարծիք։*

305· Autant en emporte le vent. *—Պատերուն կ'ըսեմ, մտիկ ընողն ով է։* Je lui recommande bien de faire attention; mais *autant en emporte le vent.*

306· C'est autant de pris sur l'ennemi. *—Աս չափին ալ գոհ եմ (պու տա քեար տըր)։ Կը գործածուի երբ մէկը կը յաջողի ստակ փրցնել պահանջքէ մը զոր գանձելու բնաւ յոյս չունի։*

307· Autant pour le brodeur!. —Ուրիշներուն հաւտացուր · ուրիշներուն թող հաւտացնէ · (այդ խօսքերը կլլող չկայ)։

Ծանօթ · —Սոյն առակին brodeurը աղաւաղումն լինել կը թուի bourdeur բառի՝ որ կը նշանակէ «ստա-խօս»։

AUTEL

308· Qui sert à l'autel, doit vivre de l'autel կամ Le prêtre doit vivre de l'autel. (առակ) Պէտք է որ ամէն մարդ իր պաշտօնէն, իր արհեստէն ապրի։

309· Elever autel contre autel. —Վաճառատան մը դէմ վաճառատուն բանալ, գործարանի մը դէմ գործարան բանալ (նորա վարկը կոտրելու համար)։

310· Ami jusqu'aux autels. (առակ) — Թէև պէտք է ամէն ինչ զոհել բարեկամութեան, սակայն ներելի չէ ծառայութիւն մատուցանել բարեկամին՝ հակառակ իր խղճին։

AUTEUR

311· Je vous cite կամ je vous nomme mes auteurs. —Չեզի տուի այն անձին անունը որ այս լուրը ինձ հաղորդեց։ Il ne veut pas citer, dire, nommer son auteur.

AUTORITÉ

312· Faire une chose de son autorité privée. —Ինքն իր գլխուն գործ տեսնել։

## AUTOUR

313· Ne confondons pas autour avec alentour. Կ'ուղղուի մէկու մը՝ որպէս զի ուշադիր ըլլայ երկու տարբեր բաներ իրարմէ զանազանելու ։

## AUTRE

314· Parler de choses et d'autres. —Սըկէ նըկէ խօսիլ ։ Nous parlâmes *de choses et d'autres,* mais il ne fut nullement question de vous.

315· De temps à autre. —Ատեն ատեն ։ Il venait nous voir *de temps à autre.*

316· L'un dans l'autre կամ l'un portant l'autre. —Իրարու վրայ ։ Ces volumes m'ont coûté dix francs *l'un portant l'autre.*

317· En voici bien d'un կամ d'une autre. —Ա'ռ քեզի ուրիշ մ'ալ ։

318· A d'autres! —Ուրիշներուն հասկցուր, կլլեցուր ։

319· Il dit d'un et fait d'autre. —Ըսածին պէս չգործեր ։ Գործը խօսքին չհամապատասխաներ ։

320· Vous n'en faites jamais d'autres! —Անմտութենէ զատ բան մ'ըրած չունիս ։

### CATHOLIQUE

697· Un catholique à gros grains. — Կաթոլիկ մը՝ որ իւր կրօնի կանոնները շատ ճշդիւ չ'գիտեր, որոյ ուղղափառութիւնը կեղակարծ է։

Ծանօթ. — Ակնարկութիւն համրիչին ուր խոշոր հատիկներն պզտիկներէն շատ աւելի քիչ են։

### CAUCHEMAR

698· Cet homme est mon cauchemar, donne le cauchemar. — Ընտանեկան ոճ՝ որ կը նշանակէ. այս մարդը խիստ տաղտկալի է (հայերէն ռամկական ոճին գրեթէ կը համապատասխանէ, ճնշող դեւանէ։)

Ծանօթ. — Cauchemar ը ծանրութիւն մ'է զոր մարդ երբեմն քնացած ատեն կ'զգայ որովայնին վրայ։ Անգղիացիք զայս կը կոչեն night-mare (նայդ-մէյր) այսինքն՝ գիշերային զամբիկ, և զայն կը ներկայացնեն ի ձեւ զամբիկի՝ որ ծանրացած է մանկամարդ աղջկան մը կուրծքին վրայ, ինչ որ տեղի կու տայ կարծելու թէ այս բառին՝ որ հին Ֆրանսերէնի մէջ իգական էր՝ բուն ստուգաբանութիւնն է calcans, ճնշող, և mare, զամբիկ բառերուն։

### CAUSER

699· Causer de la pluie et du beau temps. — Ռամկական ասացուած՝ որ կը նշանակէ ոչինչ բաներու յ խօսիլ։

### CAUTÈRE

700· C'est un cautère sur une jambe de bois. —Փայտեղէն սրունքի վրայ խարան մ'է։ Այսպէս կը կոչեն ռամկօրէն՝ անպիտան, անօգուտ դեղ մը։

### CAUTION

701· Etre sujet à caution. —Վստահելի չըլլալ։ Cet homme est *sujet à caution.* —Cette histoire, cette nouvelle est *sujette à caution* (երկբայելի, տարակուսելի է)։

### CE, CELA

702· C'est que. —Վասն զի, պատճառը այն է որ։ Pourquoi n'êtes-vous pas venu? —*C'est que* j'étais malade.

703· Comme cela կամ comme ça. —Անանկ նանկ։ Comment vous portez-vous? —*Comme ça.*

### CÉLESTIN

704· Voilà un plaisant célestin (առակ)· —Մեծ անամօթ մը, մէկը՝ որոյ կատակները պատշաճութեանց սահմանէն կ'անցնին։

Ծանօթ· —Րուէնի մէջ Célestin անուամբ կրօնաւորք ազատ էին իրենց ըմպելեաց համար տուրք վճարելէ, այն պայմանաւ որ քաղաքը մտած ատեննին

այս կրօնաւորներէն մին գինեկիր սայլակներուն վերեւէն պիտի քալէր, և զուարթ կերպարանքով պիտի ցատկէր կառավարչին տան քովէն անցած ատեն։ Օր մը որ այս կրօնաւորը առջի անգամներէն աւելի զուարթ կ'երեւէր, կառավարիչը գոչեց. Ահա՛ խեղկատակ Սեւլէոտէն մ'ալ։ Ամենայն հաւանականութեամբ այս եղած է վերի առակին ծագումը։

## CERBÈRE

705. Ըստ դիցաբանութեան՝ Կերբեր դժոխոց պահապան՝ երեքգլխի շուն մ'էր։ Ընտանեկան ոճի մէջ այս բառը կը գործածուի նշանակելու համար կոշտ, վայրենաբարոյ դռնապան մը։ Votre vieux *Cerbère* ne voulait pas me laisser entrer.

## CERCLE

706. Enfermer quelqu'un dans le cercle de Popilius. —Պոպիլեան շրջանակին մէջ փակել զոք, այսինքն՝ ստիպել զոք անմիջապէս որոշելու, պատասխան տալու։

Ծանօթ. —Ակնարկութիւն այն շրջանակին զոր Պոպիլիոս Լէնաս գծեց Անտիոքոսի՝ Սիւրիոյ թագաւորին՝ շուրջը, արգիլելով նմա դուրս ելնել անտի մինչեւ որ իրեն խոստանայր չ'յարձակելու Եգիպտոսի թագաւորին վրայ, որ Հռովմայեցւոց դաշնակիցն էր։

## CÉRÉMONIE

707. Faire des cérémonies. — Նազ ընել։ Il a *ait* bien *des cérémonies* pour prendre médecine.

## CERVEAU

708· S'alambiquer le cerveau. — Վերացական բաներու վրայ միտք յոգնեցնել։

709· Avoir le cerveau timbré, fêlé. — Ուղեղը ճաթած, փախուկ ըլլալ։

710· Il a le cerveau creux, c'est un cerveau creux. — Երազատես, ցնորամիտ է։

## CHACUN

711· Chacun avait sa chacune. — Ընտանեկան ոճի մէջ կը գործածուի և կը նշանակէ՝ իւրաքանչիւրին կինը հետն էր։

## CHAIR

712· En os et en chair. — Նոյն ինքն, անձամբ անձին։ On le disait perdu, mais le voilà *en os et en chair*.

713· Cela fait venir la chair de poule. — Մարդուն մազերը կը տնկուի, քստմնելի բան է այդ։

714· On ne sait s'il est chair ou poisson կամ Il n'est ni chair ni poisson (առակ)· — Տկարամիտ մէկն է և բանի մը որոշում չ'կրնար տալ։

715· A chair de chien, sauce de loup (առակ — Պէտք է վարուիլ չարերուն հետ այն խստութեամբ որոյ արժանի են։

## CHAMBRE

716· Il a bien des chambres à louer dans la tête. — Վերնատունը մարդ չ՚կայ. քիչ մը փախուկ է։

## CHAMP

717· Avoir la clef des champs. — Ուզած տեղը երթալու ազատութիւն ունենալ։

718· Prendre la clef des champs. — Փախուստ տալ։

Avoir un œil aux champs et l'autre à la ville. —Ամէն բանի վրայ հսկել։

719· Se sauver à travers champs. — Փախուստ տալ (պատասխան տալէ, խնդիրէ մը)։

720· Être, mettre aux champs. — Բարկանալ, բարկացնել։ Un rien le *met aux champs*.

## CHAMPAGNE

721· Il ne sait pas toutes les foires de Champagne. — Շատ օգտակար բաներու տեղեակ չէ։

Ծանօթ. — Շամբանեի տօնավաճառներն երբեմն խիստ նշանաւոր էին. Բրօվէնի, Թրուաի, Րէյմսի, եւն.ի մէջ կային անոնցմէ։

722· Il regarde en Bourgogne la Champagne i brûle. — Պարկեշտ ասացուած որ կը նշանակէ՝ կը նայի։

### CHANCE

723· Livrer chance à quelqu'un. —Մէկը գըր-գռել 'ի կռիւ, 'ի վէճ։ Vous avez beau *lui livrer chance;* il est trop sage pour répondre à vos défis.

### CHANDELLE

724· Devoir une belle chandelle à quelqu'un. — Երախտապարտ ըլլալ մէկուն օգնութեան մը համար՝ զոր մեզ մատուցած է խիստ կարեւոր պարագայի մը մէջ։

725· La chandelle brûle· — Ժամանակը կ'անցնի։

Ծանօթ· —Ակնարկութիւն մ'է այս հաւանականաբար այն տարիներուն՝ յորս, դեռ ժամացոյցն անծանօթ ըլլալով, երկայն մոմեր կը վառէին օրուան բաժանումներն ցուցնելու համար։

### CHANGE

726· Prendre le change. —Խաբուիլ։

727. Donner, faire prendre le change. —Մէկը իւր նպատակէն շեղեցնել՝ խաբելով զայն։

728· Rendre le change. — Մտացի պատասխան տալ կատակի մը, առարկութեան մը։

### CHANGER

729· Changer de note, de ton. — Կակուղնալեզուն փոխել· խօսելով մէկու մը վրայ՝ որ առ ա՛

*խօսելուն եղանակը, ձեւերը կը փոխէ)։* Il a bientôt *changé de note,* intimidé qu'il était par son adversaire.

730· Il a été changé en nourrice. — *Առացուած որ կը նշանակէ թէ տղայ մը ոչ հօրը և ոչ մօրը կը նմանի ։*

CHANSON, CHANT

731· Il ne se paie pas de chansons. — *Գործ կ'ուզէ՝ և ոչ խօսք ։*

732· C'est le chant de cygne. — *Կ'ըսուի հանճարեղ մարդու մը վերջին աշխատութեանց համար ։*

CHANTER

733· Faire chanter quelqu'un. — *Բռնութեամբ կամ խորամանկութեամբ բան մ'ընել տալ մէկուն. — Մէկէն ստակ փրցնել սպառնալով երեւան հանել գաղտնիք մը՝ զոր գաղտնի պահել կ'ուզէ ։* Il connaît son faible, et il le *fait chanter* à son gré.

734· C'est comme si vous chantiez. — *Ըսածդ բոլորովին անօգուտ է ։*

735· Chantez à l'âne, il vous fera des pets (առակ). — *Կ'ըսուի անպիտան մարդոց վրայ խօսելով, որք չ'են կրնար օգուտ քաղել իրենց եղած աղդարարութիւններէն, խրատներէն ։*

736· Chanter pouilles à quelqu'un. — *Առացուած ընտանեկան որ կը նշանակէ թշնամալից յանդիմանութիւններ ուղղել մէկուն ։*

## CHANVRE

737· Une cravate de chanvre. —Ընտանեկան լեզուաւ կը գործածուի և կը նշանակէ՝ կախաղանի չուան։ Il mérite une bonne *cravate de chanvre.*

## CHAPE

738· Chercher chape-chute. —Ուրիշին անփութութենէն կամ թշուառութենէն օգուտ քաղելու առիթ փնտռել։

739· Se débattre „de la chape à l'évêque. —Վիճաբանիլ բանի մը վրայ՝ որ կարեւորութենէ զուրկ է մեզ համար և ուրկէ ոև է օգուտ չ'եմք կրնար քաղել։

Ծանօթ. —Կ'ըսեն թէ երբ Պուրժացի եպիսկոպոս մը առաջին անգամ Պուրժ քաղաքը մտնէր, իւր շուրջառը (chape) ժողովրդեան կը յանձնուէր, որ զայն բաժնելու համար, կտոր կտոր կ'ընէր և հետեւաբար ոչինչ բանի մը համար կռուած կ'ըլլար։ Ամենայն հաւանականութեամբ այս սովորութիւնը ծնունդ տուած է սոյն առակին։

## CHAPEAU

740· Այս բառը ընտանեկան ոճով այրի իմաստով կը բանի յաճախ։ Il y avait là plusieurs femmes, et pas un *chapeau.*

741· Mettre son chapeau de travers. —Սպառնալ։

742· Se donner un mauvais chapeau. — Գէշ համբաւ հանել։ Il s'est *donné un mauvais chapeau* pour un rien.

743· Qui a de l'argent a des chapeaux (առած)· —Հարուստին շուրջը միշտ խումբ մը մարդիկ կը գտնուին՝ որ հազարումէկ քաղաքավարական ձեւեր կ'ընեն իրեն ։

744· Perdre la plus belle rose de son chapeau. —Մեծ կորուստ մ'ընել, մանաւանդ օգնութեան, պաշտպանի մասին ։ C'est fait de lui : il a *perdu la plus belle rose de son chapeau.*

745· Elle a un chapeau de roses. —Կ'ըսուի հարսնցու աղջկան մը համար որ խիստ համեստ օժիտ մը ունի միայն ։

746· Chapeau chinois. — Գդակի ձեւով՝ բոժոժաւոր տեսակ մը նուագարան ։

## CHAPELET

747· Défiler son chapelet. —Բանի մը վրայ բոլոր գիտցածը ամենայն դիւրութեամբ ըսել։ Il est trop rusé pour *défiler son chapelet.*

748· Le chapelet se défile. —Այսպէս կ'ըսուի երբ մահուամբ ընտանեաց մէջէն և կամ ընկերութեան մը մէջէն անձինք հետզհետէ կը պակսին ։

## CHAPELLE

49· Jouer à la chapelle. —Սնոտի բաներով ըրէն զբաղիլ ։

750· Il n'est si petite chapelle qui n'ait son saint (առած)· — *Չ'կայ մարդ մը՝ ինչ որ ալ ըլլայ իւր կացութիւնը, որ չ'ունենայ բարեկամ, պաշտպան։*

751· Chapelle blanche. — *Ընտանեկան լեզուաւ կը նշանակէ անկողին։* Voilà un enfant qui n'en peut plus ; il faut le conduire à la *chapelle blanche.*

### CHAPITRE

752· N'avoir pas voix au chapitre. *Իւր ընտանեաց, ընկերութեան մէջ բնաւ յարգ չ'ունի։*

### CHAPON

753· Un chapon de Normandie. — *Արգանակի մէջ եփած հացի կեղեւ։*

754· Un chapon de Gascogne. — *Պճեղ մը խստոր։*

Ծանօթ· — *Հնոյն Կասքօնիայ բոլոր տանց մէջ խըստոր կ'ուտէին։*

755· Un chapon de Limousin. — *Տագանակ։*

Ծանօթ· — *Տագանակը առատ է Լիմօժի մերձակայքը։*

### CHAQUE

756· Chaque tête, chaque avis (առած)· — *Որչափ մարդիկ՝ այնչափ կարծիք։*

### CHARBONNIER

757· La foi du charbonnier. — *Պարզ, միամ. հաւատք։*

758· Charbonnier est maître chez lui (առակ)· Ամէն մարդ իւր տանը մէջ տէր է, որչափ ալ աղքատ ըլլայ։

Ծանօթ· —Այս առակը փոփոխութիւնն է սա հին առածին· Par droit et par raison, chacun est le maître dans sa maison. Կը պատմեն թէ այս առածը գործածած է ածխագործ մը, երբ օր մը հիւրընկալեց զՖրանսուա Ա· որ որսի ատեն մոլորած էր։

### CHARGE

759· Revenir, retourner à la charge. —Պնդել, յամառիլ, նոյնը կրկնել։ Mais comme il connaissait ma lenteur et ma paresse, il ne s'embarrassait point de mes chagrins. Il *revenait* opinâtrément *à la charge.*

760· A la charge de, à charge de, à charge que. —Այն պայմանաւ որ։ Je lui ai vendu ma maison, *à la charge de* payer mes plus anciens créanciers.

### CHARITÉ

761· Prêter des charités à quelqu'un. —Բամբասել, զրպարտել։ On lui a *prêté* bien *des charités.*

762· Charité bien ordonnée commence par soi-même (առակ)· —Սէր յանձանէ սկսանի· (Կ'ըսուի աստատելու համար անձնասիրութիւնն մէկու մը որ՝ ու ոչինչ գրելով պատշաճութիւն և ընկերսիրութիւն՝ քզինքին կը ծառայէ)։

### CHARLEMAGNE

763· Faire Charlemagne. —Խաղի մէջ վաստկե-լէ յետոյ` քաշուիլ։ Après avoir gagné cinq parties de suite, il a *fait Charlemagne.*

### CHARME

764· Le charme est rompu. —Պատրանքը անցաւ։ Les manières de cette femme m'avaient d'abord séduit, mais *le charme est rompu.*

### CHARYBDE (ՔԱՌԻՊՏ)

765· Tomber de Charybde en Scylla. —Մէկ վտանգէն պրծիլ միւսին մէջ իյնալ։

Ծանօթ. —Քարիպտ և Սկիլլա Մեսինայի Նեղուցին մէջ երկու խութեր էին, իրարու բաւական մօտ, և երբեմն խիստ վտանգաւոր նաւարկուաց համար։ Առաջինը Սիկիլիոյ և երկրորդը Իտալիոյ ափանց վրայ կը գտնուէր։

### CHASSER

766· Un clou chasse l'autre (առած). —Նոր ցանկութիւններն կամ հոգերն առաջին ցանկութիւններն կամ հոգերն կը մոռցնեն։ L'ambition a succédé à l'amour: *un clou chasse l'autre.* Կ'ըսուի նաեւ իրարու յաջորդող անձանց վրայ խօսելով. Ce favori vient d'être supplanté par un tel: *un clou chas l'autre.*

767· La faim chasse le loup du կամ hors d

bois (առակ) . —Հարկը կ'ստիպէ մարդիկ աշխատելու, և կամ ընելու այնպիսի բաներ՝ զորս չ'պիտի ընէին՝ եթէ պէտքն չ'բռնադատէր զիրենք :

768· Chasser sur les terres d'autrui. —Ուրիշին իրաւունքը յափշտակել :

769· Leurs chiens ne chassent pas ensemble (առակ) . —Ընտանեբար կը գործածուի խօսելով երկու մարդոց վրայ որ իրարու հետ սիրով չ'են : Իրենց ոչխարները միասին չ'են արածեր :

770· Bon chien chasse de race (առակ) . —Որդին իւր ծնողացը բնութիւնը, բարքը կ'ունենայ :

CHAT

771· Jeter le chat aux jambes à quelqu'un. —Ցանցանքը մէկուն վրայ ձգել . յանդիմանել, ամբաստանել : Et vous parlez indifféremment de tout *sans* qu'on vous *jette le chat aux jambes.*

772· Emporter le chat. —Տունէն դուրս ելնել առանց հրաժեշտի, առանց բան մ'ըսելու : Où est donc Jean ? ah ! le drôle ! il a *emporté le chat.*

773· Bailler à quelqu'un le chat par les pattes. —Գործ մը յառաջի դնել մէկուն՝ դժուարագոյն կողմերն միայն ցուցնելով, և այսպէսով մեծ տագնապի մէջ ձգել զայն :

774· Vendre, acheter chat en poche. —Ապրանք մը ծախել՝ առանց զայն ցուցնելու, ապրանք

մը գնել՝ առանց զայն տեսնելու ։ Il voudrait bien, lui, *vendre chat en poche.* Je n'achète pas chat en poche.

775· Appeler un chat un chat. —Կատուին կատու ըսել, այսինքն՝ բան մ'ըսել եղածին պէս, առանց կեղծելու · բան մը անուանել իւր բուն անուամբն ։ J'appelle un chat un chat, et Rollin un fripon.

776· C'est le chat. —Դուն չըրիր, փիսիկն ըրաւ ։ Qui a répandu cette encre, mon enfant? — Ce n'est pas moi. —Non, ce n'est pas vous, *c'est le chat.*

777· Quand les chats n'y sont pas, les souris dansent (առակ) · — Կատուին բացակայութեանը՝ մկունք կը պարեն, այսինքն՝ տէրը կամ վերակացուն բացակայ եղած ատեն, հպատակեալներն ուզածնին կ'ընեն ։

778· Avoir un chat dans la gorge· —Վայրկենաբար կոկորդը կերկերիլ, այնպէս որ մարդ չ'կրնայ խօսիլ ։

779· Il n'y a pas de quoi fouetter un chat. — Այդքան աղմուկ հանելու բան չ'կայ · անկարեւոր դէպք մ'է ։

780· A bon chat, bon rat (առակ) · — Կ'ըսուի երկու անձանց համար՝ որք հաւասար զօրութեամբ կը մրցին · կը նշանակէ նաեւ՝ Քեզմէ չեմ վախնար, ինչ որ ալ

ըննէ, ֆօխալէնը հ'ասնէ։ Vous la frappiez avec le même trait : *à bon chat, bon rat.*

781· Chat échaudé craint l'eau froide (առակ). —*Սխալում մը, պակասութիւն մը խոհեմ, զգոյշ կը գործէ զմարդ. (Կէօզ կէօրմիւշիւնտէն գօրգար)։*

782· Il entend bien minon sans qu'on dise chat. —*Ճարտար մարդ մ'է որ խօսքդ դեռ չըմնցուցած՝ միտքդ կը հասկնայ։ (Լէպ տէմէտէն լէպլէպիճի անլար)։*

783· La nuit, tous les chats sont gris. —*Մութին մէջ ամէն բան իրարու կը նմանի. բոլոր կանայք գեղեցիկ կ'երեւան։*

784· Il ne faut pas réveiller le chat qui dort (առակ). *Պէտք չ'է քնացող կատուն արթնցնել, այսինքն՝ խոհեմութիւն չ'է մտքէ ելած գէշ գործ մը միտք ձգել, կամ՝ չար մարդու մը բարկութիւնը գրգռել։*

785· S'accorder comme chien et chat. —*Չ'միաբանիլ։*

786· Faire de la bouillie pour les chats. —*Անօգուտ նեղութիւն կրել։*

Ծանօթ. —*Կ'ըսեն թէ կատուները աթերայ* (bouillie, լափա) *չ'են սիրեր, որովհետեւ իրենց շրթանց մէջ կը մնայ։*

787· Se servir de la patte du chat pour tirer les marrons du feu. —*Վարպետութեամբ մէկը վտանգաւոր գործի մը մէջ մղել՝ ուրկէ շահ կ'ակնկալուի։*

## CHATEAU

788· Bâtir des châteaux en Espagne. —Անիրականալի գաղափարներ կազմել։ Pensez-vous donc que vous pourrez vous procurer cette fortune? Mais, mon ami, je vous assure, vous *bâtissez des châteaux en Espagne.*

**Ծանօթ.** —Այն ժամանակները՝ յորս Մաւրիտանացիք ի Սպանիա արշաւանքներ կ'ընէին, արգիլեալ էր հոն դղեակներ շինել, վախնալով որ մի՛ գուցէ այս թշնամիներն զայնս գրաւեն, և ամրանան նոցա մէջ։

789· Un château de cartes. —Փոքրիկ գեղեցիկ տուն մը, սակայն բոլորովին խախուտ։

## CHAUD

790· Le rendre tout chaud à quelqu'un, le rendre chaud comme braise. —Իրեն եղած անարգանաց կամ զրկանաց վրէժն անմիջապէս լուծել։ Il *le* lui *rendit tout chaud*, tant il était exaspéré.

791. Tomber de fièvre en chaud mal (տռակ). —Փոքր չարիքէ մը, վտանգէ մը փախչելով՝ մեծէն բռնուիլ. անձրեւէն փախչիլ կարկուտի բռնուիլ։ (Կ'ըսուի նաեւ tomber de la poêle dans la braise)։

792· Souffler le chaud et le froid. —Մի եւ նոյն անձը երբեմն գովել, երբեմն պարսաւել. երբեմն պաշտպանել, երբեմն դէմ խօսիլ։ C'est un homme

qui *souffle le chaud et le froid*: c'est pourquoi il n'a que peu d'amis.

793· Cela ne me fait ni chaud ni froid. —*Այդ բաները անխտիր են, տարբերութիւն չ'ունին ինձ համար*։

794· Tout chaud et tout bouillant. —*Տաք տաք, շուտով*։ Il est accouru *tout chaud et tout bouillant* nous annoncer cette nouvelle.

### CHAUSSE

795· Le vin ne porte point de chausses (առակ). —*Գինովէն ողջմտութիւն, պարկեշտութիւն չ'սպասուիր*։

796· Cette femme porte les chausses. —*Այս կինը իր տան մէջ իր ամուսնէն աւելի տիրապետութիւն կ'ընէ*։ (*Կ'ըսուի նաեւ*· Cette femme porte la culotte)։

797· Faire dans ses chausses. —*Մեծ վախի հանդիպիլ· տեղը ընել*։

798· Tirer ses chausses. —*Փախչիլ*։

### CHEF

799· Faire quelque chose de son chef. —*Ինքնիր գլխուն բան մ'ընել*։ Il a fait cela *de son chef*, sans en avoir reçu l'ordre.

800· Au premier chef. — *Չափազանց, խիստ։* Des mémoires intéressants *au premier chef.*

801· Vous avez fait là un beau chef-d'œuvre. — *Հեգնական ձեւ յանդիմանելու մէկը բան մը կոտրած ըլլալուն համար։* — Qui a donc cassé le carreau de vitre? Je jure que c'est vous, Jacques. — Eh bien, oui, c'est moi. — Bon! *vous avez fait là un beau chef-d'œuvre.*

802· Du chef. — *Ըստ իրաւանց։* Il a tant de biens (*ինչք*) *du chef* de son père.

CHEMIN

803· Tout chemin mène à Rome (առակ)· — *Շատ միջոցներով կարելի է նպատակի մը հասնիլ։*

804· C'est le chemin des paradis. — *Այսպէս կ'ըսուի խիստ նեղ ճամբու մը՝ ուրկէ մէկ մէկ հոգի միայն կարելի է անցնիլ, այն ալ դժուարաւ։*

805· Aller toujours son chemin. — *Իւր գործը յառաջ տանիլ, առանց այլոց ըսածին կամ ըրածին ականջ կախելու։* C'est un homme résolu: il *va toujours son chemin.*

806· Demeurer en bon chemin. — *Վհատիլ այն վայրկենին՝ յորում ամէն դժուարութիւնք հարթուելու վրայ էին։* Vous savez ce qui me contrarie le plus: c'est qu'il est *demeuré en bon chemin,* lorsque toutes les difficultés étaient presque aplanies.

807· N'y pas aller par quatre chemins. —*Շիտկէ շիտակ միտքը յայտնել*։ Il n'y est pas *allé par quatre chemins.*

808· Le chemin de Saint-Jacques. —*Ռամկական անունն է Ծիր Կաթինի* (voie lactée)։

809· Il fera son chemin. —*Կ'ըսուի երիտասարդի մը համար որ լաւ ապագայ կը խոստանայ, որովհետեւ խելացի եւ աշխատասէր է*։

CHEMINÉE

810· Il faut faire une croix à la cheminée. —*Սովորաբար կ'ըսուի երբ մէկը կ'երթայ տուն մը՝ ուր շատ ժամանակէ ի վեր չ'է գացած*։ (Ոտքը Ջուր Բօֆեցէ+)։ *Այս ասացուածն կը գործածուի նաեւ արտաքոյ կարգի դէպքի մը համար, ինչպէս անմիտի մը կողմանէ խելացի խօսք մը*։

**Ծանօթ.** — *Հեթանոսները երջանիկ օրերը ճերմակ քարով մը կը նշանակէին։ Քրիստոնէութիւնը, եթէ չ'յաջողեցաւ բոլոր նախապաշարումներն ջնջել, գէթ կրցաւ անոնց նշանները փոխելու։ Ճերմակ քարին տեղ խաչը հաստատեց, որ բնականաբար վառարանին վրայ կ'ըլլար, որովհետեւ տան ամենէն աչքի զարնող տեղն էր*։

811· Dire quelque chose sous le manteau de la cheminée. —*Բան մը գաղտնի, ծածուկ ըսել*։

**Ծանօթ.** —ԺԶ. *դարու մէջ, ազնուապետական հա-*

բուստ տանց մէջ ահագին վառարաններ կային որոց դարաւանդակները (manteau) այնչափ բարձր էին որ ընտանիքը կրնար հոն ապաստանիլ և բարեկամները ընդունիլ։

CHEMISE

812· Mettre quelqu'un en chemise. — Մոխրոյ վրայ նստեցնել։ Les pertes considérables qu'il a éprouvées l'ont *mis en chemise.*

813· La peau est plus proche que la chemise (առակ) · —Անձնական շահերը այլոց շահերէն աւելի առաջ են ։

814· Changer de quelqu'un կամ de quelque chose comme de chemise. —Շապիկի պէս , այսինքն ստէպ և դիւրաւ բան մը փոխել։ Il *change de* domestique *comme de chemise.*

CHÈRE

815· Il ne sait quelle chère lui faire. — Զայն ի՛նչպէս ընդունիլը , ի՛նչպէս մեծարելը չը գիտեր ։

816· Faire bonne chère. — Աղէկ ուտել խմել։ Nous avons *fait bonne chère* dans le festin.

817· Chère de commissaire. —Շատ լաւ ճաշ ։

CHEVAL

818· Dans կամ sous le pas d'un cheval. — Դիւրաւ , անջան ։ Croit-il que mille écus se trouvent ainsi *sous le pas d'un cheval?*

819· Monter sur ses grands chevaux. —Լուրջ կերպարանք մը առնել, խստիւ խօսիլ։ Il était ordinairement de bonne humeur; il entendait raillerie; aujourd'hui, au contraire, il a *monté sur ses grands chevaux.*

820· Fièvre de cheval. —Սաստիկ ջերմ։

821· Médecine de cheval. —Սաստիկ մաքրողական դեղ։

822· Écrire à quelqu'un une lettre à cheval. —Խիստ նամակ մը գրել մէկուն։

823· Parler à cheval à quelqu'un. —Խստիւ, հպարտաբար, իշխանաբար խօսիլ մէկուն։

824· Être à cheval sur quelque chose. —Բանի մը վրայ միշտ խօսիլ, բերնէն վար չ'ձգել զայն։ Il est *à cheval* sur sa noblesse, sur telle opinion.

825· Il n'est si bon cheval qui ne bronche. (առակ)· —Ամենէն լաւ ձին ալ կը գթէ, այսինքն՝ չ'կայ մարդ մը, որչափ ալ խոհեմ, որչափ ալ խելացի ըլլայ, որ ենթակայ չ'ըլլայ պակասութեան մը մէջ իյնալու։

826· L'œil du maître engraisse le cheval (առակ)· —Երբ մարդ անձամբ իւր գործոց վրայ հըսկէ, դժգոհելու առիթ չ'ունենար, աղէկ կ'ըլլայ։

827· A cheval donné on ne regarde pas à la ide (առակ)· —Եղած նուէրի մը պակասութիւն-ր գտնել անվայել է։

828· Qui aura de beaux chevaux, si ce n'est le roi? —Կը գործածուի պատասխանելու համար մէկու մը, որ կը զարմանայ հարուստ մարդու մը տէր եղած գեղեցիկ տուարկայներուն վրայ։ (Հայերէն շատ անգամ այս պարագային մէջ ռամկօրէն կ'ըսեն՝ ան- ըսենեննայ՝ հողա ո՞չ ղէոչ ունեննայ, եղայն)։

829· Un cheval échappé. —Անզուսպ կրիւք ե-րիտասարդ։

830· Un cheval de trompette. —Մէկը՝ որ բա-նէ մը չ'վախնար։

831· Cheval fondu. —Տեսակ մը մանկական խաղ. մոմլեկ (պինտիր պին)։

## CHEVALIER

832· Un chevalier d'industrie. —Նենգաւորու-թեամբ, խաբեբայութեամբ ապրուստը ճարող։ Je m'étonne de quoi vit cet homme; il n'exerce aucune profession.—Mais, c'est un *chevalier d'industrie.*

833· Se faire le chevalier de quelqu'un. —Ջեր-մապէս պաշտպանել, ջատագովել մէկը։ Il *s'est fait le chevalier de* son ami, qui était trop naïf pour se défendre lui-même.

## CHEVEU

834· Style tiré par les cheveux. —Բռնազբօս եալ ոճ։ Cette interprétation, cette pensée est *tiré par les cheveux* (քաշկռտուք)։

835· Il ne s'en est fallu que de l'épaisseur d'un cheveu. —Մազ մնաց, քիչ մնաց։

836· On ne peut pas peigner un diable qui n'a pas de cheveux (առակ)· — Չ'կրնար պահանջուիլ մէկէ մը չ'ունեցածը տալու։

## CHEVILLE

837· Ne pas aller à la cheville de quelqu'un. —Մէկէ մը շատ վար ըլլալ (տաղանդի, արժանեաց, հարստութեան մասին)։ Կը համապատասխանէ մեր ռամկօրէն մէկուն ոտքին եղունգը անգամ չ'արժել ասացուածին։ Il ne lui *va pas à la cheville.*

838· La cheville ouvrière d'une affaire. —Գործի մը մէջ այն անձը՝ ուրկէ կախում ունի ամէն բան։ Vous devriez vous adresser à M***, il est *la cheville ouvrière* de l'affaire.

839· Autant de trous, autant de chevilles. — Կերպ մ'է ըսելու թէ մէկը այնքան արագաբար կը պատասխանէ մէկուն կամ կ'ըմբերանէ մէկը որքան սա հարցում կամ յանդիմանութիւն կ'ուղղէ իրեն։

## CHÈVRE

840· Ménager la chèvre et le chou. — Երկու կռուակ կողմանց կամ երկու հակառակորդաց հետ արդարութեամբ վարուիլ, առանց աւրուելու ոչ մի-
ւ և ոչ միւսին հետ։

Ծանօթ. — Այս պարբերութիւն ծագումն առած է խնդիրէ մը՝ յորում կ'առաջարկուի գետէ մը անցընել կաղամբ (chou) մը, այծ (chèvre) մը և գայլ (loup) մը, այնպէս որ ոչ գայլը կարենայ այծը ուտել, և ոչ ալ այծը՝ կաղամբը։

841. Prendre la chèvre. — Ոչինչ. բանի համար բարկանալ, կատակ չ'վերցնել։

842. Il serait amoureux d'une chèvre coiffée. — Կ'ըսուի այրի մը համար որ ամէն կնոջ կը զարնուի, գեղեցիկ ըլլայ թէ տգեղ։

843. Où la chèvre est attachée, il faut qu'elle broute (առակ). — Պէտք է իրաց, ժամանակին, իր գործոց վիճակին համակերպիլ գիտնալ։

## CHICANE, CHICANER

844. Guerre de chicane. — Պզտիկ կռիւ։

845. Il chicane sa vie. — Ինքզինքը աղէկ կը պաշտպանէ, (կ'ըսուի ամբաստանելոյ մը համար)։

## CHIEN

846. Chien qui aboie ne mord pas (առակ). — Հաջան շունը խածան չըլլար, այսինքն՝ ամէն սպառնացողէ վախնալու չէ։

847. C'est saint Roch et son chien. — Կ'ըս երկու հոգւոյ որք միշտ միասին են։

Ծանօթ. — Սուրբ Ռօշ, ծնեալ ի Մօնբէլիէ 1296

*ինքզինքը նուիրեց ժանտահարներու սփոփման. առանձին տեղ մը ինքն ալ նոյն ախտին զոհ պիտի երթար, եթէ չըլլար այն շունը՝ որ զինքը գտաւ և որոյ տէրը զայն խնամել տուաւ և այսու նորա կեանքը փրկեց։ — Սէն Ռօշ միշտ շան մը հետ կը ներկայացուի, ահա ծագումն վերի խօսքին։*

848· Être d'une humeur de chien. — *Բարկացող ըլլալ։*

849· Cela n'est pas tant chien. — *Այնչափ գարշելի չէ այս։ (Այս բառերը կը գործածուին ի պատասխանի մէկու մը որ* chien de *(անպիտան, գէշ, գարշելի) բառերը կը գործածէ։* Ah! quel *chien de* métier! — Et vous gagnez vingt mille francs par an! *Cela n'est pas tant chien.*

850· Il n'est chasse que de vieux chiens (տռակ)· — *Գործի մէջ, չ'կայ բան մը որ ծերերու փորձառութեան և խրատներուն տեղը բռնէ։*

851· Je vous garde un chien de ma chienne. — *Փոխարէնը հարկաւ քեզ կը հատուցանեմ, ըրածդ քեզի զղջացնել կու տամ, հարկաւ օր մը ձեռքս կ'իյնաս։*

852· Entre chien et loup. — *Գիշերուան կամ առտուան մօտ, այսինքն՝ օրուան այն միջոցին՝ յոււմ ալ առարկայները չ'տեսնուելու, չ'զանազանելու կ'սկսին, յորում անկարելի է շունը գայլէն նազանել։* Il a plié bagage *entre chien et loup.*

853. Chien hargneux a toujours l'oreille déchirée (առակ). — *Կռուազէր շան ականջը միշտ պատառած կ'ըլլայ, այսինքն՝ կռուարար մարդուն գլխուն միշտ փորձանք մը կու գայ (Խարամաղ քէօփէկ Խարաողէ. օլմաղ)։*

854. Faire le chien couchant. — *Մէկուն առջեւ սողալ, քծնիլ գձձօրէն՝ շահու մը համար։*

855. Rompre les chiens. — *Կռիւը դադրեցնել, անպատեհ խօսքերը ընդմիջել.* — Comme la suite de ses discours pourrait devenir désagréable, j'ai *rompu les chiens.*

**Ծանօթ.** — *Այս ասացուածը որսորդութեան արուեստէն* (vénerie) *առնուած է՝ յորում* rompre les chiens *կը գործածուի երբ որսորդը շանց մէջէն կ'անցնի՝ անոնց վազած ժամանակը, եւ այսպէս անոնց ճամբան կը կտրէ։*

856. Autant vaut être mordu d'un chien que d'une chienne (առակ). — *Արու եւ մատակ շունէ մը խածնուելուն մէջ տարբերութիւն չ'կայ. այսինքն՝ չարիքը չարիք է միշտ, որ կողմէն որ ալ գայ։*

857. Être chanceux comme le chien à Brusquet (առակ). — *Առաջին ձեռնարկէն սկսեալ՝ խիստ անյաջող, դժբաղդ ըլլալ։*

858. N'être pas bon à jeter aux chiens. — *Բոլորովին անպիտան ըլլալ, բան մը չ'արժել։* — Alle vous *n'êtes pas bon à jeter aux chiens..*

859· Jeter sa langue aux chiens. — *Հանելուկը կամ մեզի առաջարկուած բանը գուշակելէ հրաժարիլ։* — Il m'est imposible de trouver le mot de cet ènigme, je *jette ma langue aux chiens.* — *Jetez-vous votre langue aux chiens?* — Oui. — Eh bien! je vais vous le dire.

860· Se regarder en chiens de faïence. — *Կ'ըսուի երկու թշնամիներու՝ հակառակորդներու, որք անխռով իրարու կը նային։* — Rouen et le Hâvre sont deux cités rivales, comme Beaune et Dijon, et qui *se regardent en chiens de faïence.*

861· Être reçu comme un chien dans un jeu de quilles· — *Շատ գէշ ընդունելութիւն գտնել։*

Ծանօթ. — Կոնախաղի (jeu de quilles) *մէջ՝ երբ շուն մտնէ՝ խաղը կ'աւրուի . ուստի և խաղացողները անմիջապէս կը վռնտեն այն շուները որ յիշեալ խաղին մէջ մտնել կ'ուզեն։*

862· Qui m'aime, aime mon chien. — *Երբ մէկը մեզ սիրելի ըլլայ, անոր վերաբերող ամէն բանի վրայ հոգ կը տանինք։ (Նոյն իմաստով կը գործածուի նաեւ* Qui aime Bertrand, aime son chien.)

## CHOU

863· Aller planter ses choux. — *Գործէ քաշուելով՝ առանձնանալ։* — On l'a envoyé *planter ses choux.* — *Պաշտօնէն ձգեցին զայն։*

Ծանօթ· — *Քսան տարի հզօր իշխանութենէ վերջ Դիոկղետիանոս , Թագաւոր Հռովմայեցւոց , գահէն հրաժարեցաւ ։ Ծերակոյտին երեսփոխանները իւր ագարակը գացին աղաչելու իրեն որ նորէն գահը ելնէ · բայց Հռովմայեցի Թագաւորն անոնց խնդիրը մերժեց ցուցնելով անոնց իւր ձեռքով տնկած կաղամբները ։ Վերի պարբերութիւնը ակնարկութիւն մ'է սոյն մերժման ։*

864· Faire ses choux gras de quelque chose. — *Բանէ մը շահ հանել , առիթէն օգուտ քաղել ։* — *Il a fait ses choux gras* de la négligence de son associé.

865· Il s'y entend comme à ramer des choux. — *Խնդրոյ նիւթ եղող գործէն բնաւ չ'հասկնար ։*

866· Ce n'est pas tout que des choux. — *Պարբերութիւն որ կը գործածուի նշանակելու համար թէ ձեռնարկ մը գլուխ հանելու համար ունեցած միջոցները բաւական չ'են , և թէ դեռ անհրաժեշտն կը պակասի ։* Vous dites que vous avez de la fortune; mais vous savez le proverbe: *ce n'est pas tout que des choux;* il vous manque encore quelque chose d'indispensable, c'est de savoir le moyen d'en *tirer parti* (*օգուտ քաղել*) ։

867· Faire des choux et des raves d'une chose. — *Բան մը ուզածին պէս տնօրինել , տրամադրել ։*

Qu'il en fasse des choux et des raves
Se disaient quelques-uns des plus braves.

868· Faire chou blanc. —Սովորաբար կը նշանակէ «ձախողիլ»· բայց այս ասացուածը առաւելապէս խաղի մէջ կը գործածուի· թուղթի խաղի մէջ կը նշանակէ «կէտ մը անգամ չշահիլ»:

Ծանօթ. —Այս խօսքին մէջ chou ապաւաղուած է coup բառին, բիքարտական արտասանութեամբ· գալով blancի, այս ածականը շատ պարագայներու մէջ կը գործածուի «ապարդիւն», անօգուտ նշանակութեամբ:

869· Chou pour chou. —Ծառայութեան դէմ ծառայութիւն, նախատանաց դէմ նախատինք:

CHOUETTE

870· Faire la chouette. —Երկու կամ շատ հոգիներու դէմ առանձին խաղալ:

871· Etre la chouette des autres. —Ուրիշներուն ծաղրին ու արհամարհանաց ենթակայ ըլլալ:

CIEL

872· Il est avec le ciel des accomodements. —Կ'ըսուի հասկցնելու համար թէ գործ մը կրնայ կարգադրուիլ՝ եթէ խստութիւնը քիչ մը ձեռքէ ձգեմք:

Ծանօթ. —Այս պարբերութիւնը Մոլիէրի Դարթիւֆին մէկ տողն է, որ առակի կարգ անցած է:

873· Si le ciel tombait, il y aurait bien des

alouettes de prises (առակ)· —Պատասխան որ կը տրուի մէկու մը որ մեզ կը խօսի այնպիսի դէպքերու վրայ՝ որոց պատահումը բնաւ չ'յուսացուիր ։

874· Élever quelqu'un jusqu'au troisième ciel. —Մէկը մինչեւ երկինք բարձրացնել, այսինքն՝ չափազանց գովել ։

Ծանօթ· —Նախնիք շատ երկինքներ կը հաշուէին ։

875· Remuer ciel et terre. —Ամէն ճիգ թափել գաղափարի մը, նպատակի մը իրականացման մէջ յաջողելու համար ։

CIRE

876· Comme de cire կամ de cire. —Կը գործածուի aller և venir բայերուն հետ, և կը նշանակէ շատ աղէկ, է դէզ ։ Dimanche dernier, il nous a fait un sermon, pas trop mal pour un sermon de province, et qui venait *comme de cire.*

CIVILITÉ

877· Renvoyer quelqu'un à la civilité puérile et honnête. —Ընկերական սովորութիւնները սորվիլ խրատել մէկու մը որ զանոնք չ'գիտեր կամ չ'գիտնալ կը թուի ։

Ծանօթ· —*La civilité puérile et honnête,* այս անունն կը կրէ երբեմնի ընթերցարան մը, որ կը պարունակէր, տղայոց համար, խել մը խրատներ ճ ատեն ինչպէս վարուելու, ինչպէս ներս մտնել, ինչպէս բարեւելու, եւն. եղանակներուն վրայ ։

## CLAIR

878· Faire de l'eau claire. — Չ՚յաջողիլ։

879· Tirer un liquide au clair. —Ըմպելիին շիշերը լեցնել՝ զայն պարզելէ վերջ։

880· Tirer une affaire au clair. —Խնդրոյն ամէն մասերը մանրակրկիտ քննել։

881· Semer, planter clair. — Իրարմէ բաց, ցանցառ կերպով տնկել, սերմանել։

## CLEF (ՔԼԷ)

882· Les clefs de saint Pierre. — Պապական իշխանութիւն ։

883· Mettre la clef sous la porte. — Առանց պարտքը հատուցանելու և տան տիրոջ բան մ'ըսելու, տունէն, խանութէն ելնել (կ'ըսուի վարձակալի մը համար)։ Je n'ai pas eu besoin de donner congé à mon locataire: *il a mis la clef sous la porte.*

## CLERC

884· Il n'est pas grand clerc. —Շատ հեռի է գիտուն կամ արհեստին մէջ ճարտար ըլլալէ ։

Ծանօթ. — Միջին դարու մէջ, կլէրքները (clerc) այն գիտուն էին։ Ասոր սոյն բառը գործածուած է գրագէտ նշանակութեամբ։

885· Les grands clercs ne sont pas toujours

les plus fins. —Գրագէտք շատ անգամ չ'են գտներ այն հնարքներն՝ զորս կը գտնեն անուս մարդիկ ։

886· Pas de clerc. —Անխորհրդաբար կամ տգիտութեամբ գործուած յանցանք ։ Il a fait un *pas de clerc.*

887· Compter de clerc à maître (քլէռ ա մէթռ)· Միայն առած ստակին և ծախուցը հաշիւը տալ, առանց ուրիշ ո և է պատասխանատուութեան ։ On *compte* avec eux *de clerc à maître* pour le coût des achats et pour les frais.

CLIQUES

888· Prendre ses cliques et ses claques. — Ընտանեբար կը գործածուի և կը նշանակէ՝ գոյքը, աշխատութեան գործիքները առնել ։ Quant à moi, j'aurais pris *mes cliques et mes claques* et vous m'auriez vue retomber à Paris.

CLOCHE

889· N'être pas sujet au son de la cloche.— Միշտ մի և նոյն ժամուն աշխատելու, տուն երթալու եւ ստիպուած չըլլալ. իւր ժամանակին տէրն ըլլալ ։ Heureux ceux, disait-il avec une sorte d'envie, qui ne sont pas *sujets,* comme nous autres, *au son de la cloche.*

890· Qui n'entend qu'une cloche n'ente. qu'un son (առակ)· —Պէտք է երկու հակառակողներն լսել, և ապա վճիռ տալ ։

891· Faire sonner la grosse cloche. —Կ'ըսուի ստորակարգելոյ մը համար՝ որ՝ իր իշխանութեան անբաւականութիւնը տեսնելով՝ իր մեծաւորին, պետին միջամտութեան կը դիմէ ։

CLOCHER

892· Mettre le clocher au milieu du village. —Ժողովքի մը, ակումբի մը մէջ ամենուն պէտք ե-ղած բանը մէջտեղը դնել, ինչպէս, օրինակի համար, կանթեղ մը սեղանին վրայ ։

893· N'avoir jamais perdu de vue le clocher de son village. —Երբէք ճամբորդած չըլլալ։ Ceux qui *n'ont jamais perdu le clocher de leur village,* ne peuvent former une idée juste des agréments du voyage.

CLOU

894· Mettre une chose au clou. —Ռամկօրէն կը գործածուի և կը նշանակէ գրաւի դնել։

895· Compter les clous de la porte. —Մէկուն դուռը սպասել։ Le pauvre homme a *compté les clous de la porte* durant deux heures.

896· River le clou à quelqu'un. — Մէկուն խիստ պատասխան մը տալ ։

897· Cela sert comme un clou à un soufflet. Նաւ բանի մը չ'ծառայեր ։

Ծանօթ. —Ընդ. երկար սովորութիւն կար փքոց-

ներքու վրայ ոսկեզօծ գամեր դնել, պարզապէս զարդի համար, առանց որ և է բանի մը ծառայելու։

898· Etre gras comme un cent de clous. — Զափազանց նիհար ըլլալ։

COCHE

899· Manquer le coche. — Պատեհ ժամանակին ձեռքէ փախցնել։

COCO

900· C'est un fameux coco. —Անուշին մէկն է։
901· C'est un joli coco. —Տգեղ մէկն է։

CŒUR

902· Avoir le cœur gros de quelque chose.— Բանի մը վրայ սաստիկ տրտմած ըլլալ։ Il a perdu toute sa fortune par suite de sa négligence: il en *a le cœur gros.*

903· Avoir le cœur sur les lèvres կամ sur la bouche կամ sur la main. —Սիրտը և լեզուն մէկ ըլլալ։ On le trouvait toujours libre, naturel, ouvert, comme un homme qui *a son cœur sur les lèvres*.

904· Avoir le cœur net de quelque chose. - Բանի մը վրայ մտածածը ըսած ըլլալ, և կամ՝ բանի մը վրայ կատարելապէս վստահ, աներկբայ ըլլալ.– J'en *ai le cœur net.* —Je veux en *avoir le cœur ne*

905· Faire contre fortune bon cœur. —*Հակառակութենէ, ձախողանքէ չ՚վհատիլ։* Il est trop faible pour *faire contre fortune bon cœur.*

906· Tenir au cœur. —*Ցանկալի ըլլալ։* Posséder une fortune de six mille francs, voilà ce qui me *tient* le plus *au cœur.*

907· Si le cœur vous en dit. —*Եթէ ախորժակ ունիք ուտելու. —Եթէ կը փափաքիք։* Prenez encore un morceau, *si le cœur vous en dit.* —Prenons un tour de promenade, *si le cœur vous en dit.*

908· S'en donner au cœur joie. —*Կարելի եղածին չափ հաճոյք զգալ։*

909· Faire dîner quelqu'un par cœur. —*Մէկու մը ճաշ չ՚պահել, և կամ արգիլել զայն ճաշելէ։* On nous a *fait dîner par cœur.*

COFFRE

910· Rire comme un coffre. —*Բերանաբաց խնդալ, խնդալէ մարիլ։* Ils riaient comme des coffres.

911· Avoir le coffre bon. —*Ընտանեկան ոճով՝ կը նշանակէ ողջէ առողջ ըլլալ, ախորժակը տեղը ըլլալ։* Je vous assure qu'il *a le coffre bon.*

COGNÉE

912· Jeter le manche après la cognée. —*Ձախորդութենէ մը վհատիլ և ամէն բան երեսի վրայ գել։*

## COGNER.

913· Cogner fétu. —Ոչինչ բանի մը համար չարաչար յոգնիլ. (իբր գոյական կը գործածուի նաեւ՝ նոյն իմաստով՝ cogne-fétu բառը)։

## COIFFER

914· Etre né coiffé. —Բոլոր ձեռնարկած գործոցը մէջ յաջողիլ, բարեբաղդ ծնած ըլլալ։

915· Coiffer sainte Catherine. — Ամուսնանալու տարիքի մէջ ըլլալ և չ'ամուսնանալ (կ'ըսուի աղջկան մը համար)։

Ծանօթ. —Սուրբն Կատարինէ կուսոց պաշտպանն է. կ'ըսեն թէ չ'ամուսնացող աղջկունք անոր համար ամուրի կը մնան, որպէս զի Սուրբն Կատարինէի արդուզարդին հոգ տանին։

916· Se coiffer de quelqu'un. — Ընտանեկան ոճով կը նշանակէ մէկուն վուրուլմաք, տուտուլմաք։ Il *s'est* allé *coiffer de* cette femme. Elle *s'est* *coiffée* de lui.

917· Se coiffer d'une opinion. —Միտքը կարծիք մը դնել։

918· Coiffer, se *coiffer*, դարձեալ ընտանեկան ոճով կը նշանակեն քէֆլէնտիրմէք, քէֆլէնմէք (ինչպէս հայերէնի մէջ ռամկօրէն կը գործածեմք հօփալալ)։ Il faut que trois verres de vin pour le *coiffer*. C homme *se coiffe* souvent.

### COIN

919· Etre marqué au bon coin. — Աղէկ ծիր-քերու տէր, բարի մարդ ըլլալ։

920· Mourir au coin d'un bois. — Անոք անօգնական մեռնիլ։ On dit que le pauvre homme est *mort au coin d'un bois,* sans avoir pu voir même le plus intime de ses amis.

921· Jouer aux quatre coins. — Մածուն ծախեմ խաղալ։

### COLÈRE

922· C'est la colère du père Duchesne. — Բարկութենէն մի՛ վախնար, բան մը չի կրնար ընել։

### COLIN-TAMPON

923· S'en moquer comme de Colin-Tampon.— Ճնաւ հոգը չընել, սպառնացող մարդէն կամ բանէն բնաւ չը վախնալ։ Je m'en moque comme de Colin-Tampon.

### COLLET

924· Prêter le collet à quelqu'un. — Դէմ դնել. — Պատրաստ ըլլալ մէկուն հետ կռուելու։ Il fait le docteur, je lui *prêterai le collet* sur quelque matière que ce soit.

925· Collet monté. —Պերճութիւն կերպարանող։

Madame était un peu *collet monté,*
L'amour se plut à dompter sa fierté.

C'est un collet monté. — Ինքզինքը շատ ծանրարոյ կը ցուցնէ։

### COLLIER

926· Collier de misère. — *Գժնդակ աշխատութիւն՝ որ մէկուն սովորական զբաղումն է։*

927· Donner un coup de collier. — *Նոր ջանք մ'ալ ընել՝ նպատակին հասնելու համար։* Vous devez *donner un coup de collier,* si vous voulez atteindre le but que vous vous proposez.

### COLOMBIER

928· Attirer, faire venir les pigeons au colombier. — *Յաճախորդները, գնողները գրաւել։* Il connaît à merveille le moyen *d'attirer les pigeons au colombier.*

### COMÉDIE

929· Donner la comédie. — *Ինքզինքը ծաղրելի ընել։*

930· Jouer la comédie. — *Կեղծ զգացումներ ցուցնել, համակրութիւն գրաւելու համար։*

### COMMANDE

931· Maladie, joie de commande. — *Արուեստակեալ, կեղծ հիւանդութիւն, ուրախութիւն։*

### COMME

932· C'est tout comme. — *Միեւնոյն բանն է։*

933· Comme ça. — *Այս բառերն՝ երբ բաղդատութիւն չ'են ցուցներ՝ կը նշանակեն սանկ նանկ։*

934· Comme ci, comme ça. — *Սանկ նանկ, ոչ աղէկ ոչ գէշ*։ Comment ça va, voyons? *Comme ci, comme ça* (*կ'ըսուի նաեւ* couci, couci)։

## COMMUN

935· Vivre sur le commun. — *Օր մը մէկուն տունը ճաշել օր մը միւսին*։ Où est-ce qu'il dîne d'ordinaire? — Il n'a point d'ordinaire, que je sache, *il vit sur le commun.*

936· Etre bon compagnon. — *Գինին, ուտել խմել, զուարճութիւնը սիրել*։ Henri IV était *bon compagnon.*

## COMPÈRE

937· Tout se fait par compère et par commère. — *Առանց կողմնակցութեան, առանց պաշտպանութեան բան չ'ըլլար*։

**Ծանօթ.** — *Աճպարարաց, խաբեբայներու եւ. գործակիցները, օգնականները* compère *կը կոչուին* (*էգ.* commère)։

938· Compère loriot. — *Գարիկ* (*կէօզ արփաճըզը կ'ըսուի նաեւ* grain d'orge, orgelet)։

## COMPLIMENT

939· Compliment de la place Maubert. — *Այանդակ նախատինքներ*։

**Ծանօթ.** — *Ատենօք Մօպէրի այս հրապարակին վրայ ամեն տեսակ ապրանաց շուկայ կը բանային շաբաթը*

*երկու անգամ։ Դիւրին է հասկնալ թէ այդ շուկային մէջ գործածուած լեզուն հեռի էր քաղաքավարական բնութիւն ունենալէ ։*

940· Rengaînez ce compliment. — *Շնորհաւորութիւններդ ետ առէք, չեմ ընդունիր ։*

941· Je vous en fais mon compliment — *Յաջողակութիւններդ կը շնորհաւորեմ· (հեգնօրէն կ'ըսուի մէկու մը որ սխալ մը, անյաջողակութիւն մը ըրած է)։*

COMPTANT

942· Prendre une chose pour argent comptant. — *Բանի մը հաւատալ ։* C'est un homme bien simple; *il prend tout pour argent comptant.*

COMPTE

943· Au compte de. — *Լաւ ։* *Au compte de* ces gens . . . .

944· A ce compte-là. — *Եթէ այդպէս է ։*

945· A bon compte. — *Աժան ։*

946· De compte fait. — *Աղէկ հաշուելով ։*

947· De compte à demi. — *Շահը եւ վնասը կէս-ուկէս բաժանմամբ ։* Les deux avares préparent *de compte à demi* les plus sublimes tripotages. —Il se présente une bonne affaire, et je viens vous la proposer *de compte à demi.*

948· Etre de bon compte. — *Խարդախութի չընել հաշւոյ մէջ. — Անկեղծաբար խօսիլ·* Soyez

*bon compte,* vous ne vous attendiez pas à cette aubaine.

949· Prendre, mettre une chose sur son compte. — Իր վրայ առնել։ Ne vous mettez point en peine de lui faire des excuses, je le *prends sur mon compte.*

950· Sur son compte. — Իւր վրայօք։ Nous sommes fort inquiets *sur son compte.* — Quand on le vit revenir avec la grande barbe, on se mit à plaisanter *sur son compte.*

951· Tenir compte d'une somme à quelqu'un. — Գումար մը մէկուն հաշւոյն անցնել, գրել։ Chacun des associés pourra déposer, avec l'agrément de son co-associé, dans la caisse sociale, les sommes qu'il aura de disponibles en compte courant. Il lui sera *tenu compte* de l'intérêt de cette somme par la Société, à raison de 6 p. °/₀ l'an. — Փոխաբերաբար կը նշանակէ նաեւ շնորհակալ ըլլալ։

952· Faire son compte de. — Միտքը դնել։

953· Faire son compte que. — Վստահ ըլլալ։

954· Trouver son compte. — Գործին գալ, շահիլ։ Les cotons et les gommes d'Arabie, qu'on ne demandait pas la semaine passée, sont maintenant bien recherchés, et augmentent de jour en jour. Ainsi nous vous recommandons de faire une spéculation sur ces denrées, bien persuadés que vous y *trouverez votre compte.* — Vous ne

trouverez pas votre compte avec cet homme-là. —Այդ մարդուն հետ մի՛ հակառակիք · կը յաղթուիք ։

955· Etre loin de compte, de son compte. — Յուսոյն , կարծեացը մէջ սխալիլ ։

956· Rendre compte de. — Տեղեկութիւն , կամ համար տալ ։ Il s'en retourna *rendre compte* de sa commision. —Il *rendait compte* dans sa lettre d'une terrible incendie. — Nous devons *rendre compte* à Dieu de nos actions.

957· Se rendre compte de quelque chose. — Ի միտ առնել , հասկնալ , խելք հասցնել ։ Je ne pus nullement *m'en rendre compte*.

958· Les bons comptes font les bons amis. — Ներողութիւն խնդրելու ձեւ մը՝ որ կը գործածուի պարտամուրհակի մը , հաշուոյ մը ճշդութիւնն ստուգելու միջոցին ։

COMPTER

959· Qui compte sans son hôte, compte deux fois (առակ) · — Այն որ գործ մը կը կարգադրէ առանց բան մ'ըսելու անոր՝ որոյ կը վերաբերի այն գործը , յաճախ չը յաջողիր ։

960· Compter ses pas. — Կամաց կամաց երթալ · (քայլերը համրել) · —Զգուշութեամբ վարուիլ ։

CONCERT

961· De concert. —Միաբան · se mettre de concert. միաբանիլ , միանալ ։ Tous les jeunes sol

taires se *mirent de concert,* pour arracher le gros cyprès et ne purent jamais venir à bout.

### CONCURRENCE

962· Jusqu'à la concurrence de... —*Մինչեւ ... (առաջարկի գումար)*։ Vous rembourserez *jusqu'à concurrence de* mille francs.

### CONDAMNATION

963· Passer condamnation. —*Յանցանքը խոստովանիլ, ճանչնալ* (se condamner)· Ils finirent par *passer condamnation.*

964· Condamnation par défaut. —*Դատապարտութիւն վասն դատազանցութեան (ղըյապէն հիւքմ. Կ'ըսուի նաեւ* condamnation par contumace).

### CONDAMNER

965· Condamner un malade. —*Բժիշկը դատապարտել զհիւանդն, այսինքն ըսել թէ առողջանալու յոյս չկայ. (խօսք տալ)*։

### CONDITION

966· Se mettre en condition. —*Մէկուն քով սպասաւորութեան մտնել*։ Il *s'est mis en condition* chez un riche rentier.

967· Un homme de condition. —*Ազնուական մարդ*։

968· Une condition sinè quà non. —*Անհրաժեշտ պայման*։

Ծանօթ. —Sinè quà non բառերն լատիններէն են և կը նշանակեն առանց որոյ ոչ։

### CONFISQUER

969· C'est un homme confisqué. —Այս մարդուն ապրելուն յոյս չը կայ, մահը մօտ է. —Գործը լմնցած է, մոխիրի վրայ՝ նստած է։

### CONGRU

970· Portion congrue. —Ամենադոյզն թոշակ կամ վարձք։ On a mis tous ces employés à la *portion congrue.*

### CONNAISSANCE

971· Être, se trouver en pays (*բէեի*) de connaissance. —Ծանօթներու մէջ գտնուիլ։ *Vous êtes* ici *en pays de connaissance.* —Խօսիլ այնպիսի բաներու վրայ՝ որոց մէկը քաջ տեղեակ է։ A présent que vous parlez une langue que j'entends, *je suis en pays de connaissance.*

972· Avoir connaissance d'un navire. —Ծովեզերքէն նաւը նշմարել։

973· Perdre connaissance. —Նուաղիլ։ Elle a *perdu* toute *connaissance.* —Reprendre connaissance. —Խելքը գլուխը գալ։ C'est avec peine qu'on parvint à lui faire *reprendre connaissance.*

### CONNAITRE

974· Se connaître à *կամ* en quelque chose.

***Բանէ մը հասկնալ·*** Il *se connaît en* pierreries. *Vous connaissez-vous aux* vins ?

975· Ne plus se connaître. —***Խելքը կորսնցնել*** (***հիւանդը***)։ Le malade est aux abois; il *ne se connaît plus.* — ***Ինքիրմէ դուրս ելնել***։ Alors cette femme *ne se connaît plus;* elle se répand en invectives, en menaces.

976· Je ne le connais ni d'Adam ni d'Ève. — ***Այդ մարդը բոլորովին անծանօթ է ինծի***։

977· Il ne connaît pas sa main droite de sa main gauche. —***Բան մը որոշել կամ ընտրել չգիտեր***։

CONSCIENCE

978· Dire tout ce qu'on a sur la conscience. —***Սրտին վրայ եղածը ըսել***։

979· Se faire une affaire de conscience. — ***Պարտ անձին համարիլ***։

980· En bonne conscience. —***Ըստ օրինաց արդարութեան, խղճմտանօք***։ *En bonne conscience,* pouvez-vous me demander ce prix ?

981· Mettre la main sur la conscience. —***Սիրտը, ինքզինքը քննել***։ J'ai *mis la main sur la conscience,* et je me suis assuré de mon innocence.

982· Se mettre quelque chose sur la conscience. ***Կատակաբար կը գործածուի և կը նշանակէ՝ Ուտել***

կամ քաժակ մը ճէնէ խմէլ. (Նէրա շրլէլ, կնճէլ, Նէրտէլ).
Mettez-vous cela sur la conscience.

983. Vous aurez cela sur votre conscience. — Ատոր պատասխանատու պիտի ըլլաք։

CONSEIL, CONSEILLEUR

984. La nuit porte conseil. — Պէտք չ'է աճապարանօք, անխորհրդաբար որոշում տալ. պէտք է գոնէ գիշեր մ'անցնել մտածելու համար։

985. Les conseilleurs ne sont pas les payeurs. — Խորհուրդ տուողներուն չը դպչիր իրենց տուած խորհուրդէն յառաջ եկած վնասը։

CONSÉQUENCE

986. Un homme de conséquence. — Մեծարգոյ մարդ։ Une affaire de conséquence. — Կարեւոր բան։

CONSIDÉRATION

987. Par considération pour vous. — Ձեր սիրոյն համար (խաթըրընըզ իչուն)։ C'est *à* կամ *en* կամ *par considération* pour vous qu'il a fait cela.
De considération. — Նշանաւոր։

CONSOMMER

988. Faire consommer la viande. — Միսը ղէկ եփել։

## CONSUMMATUM

989. Consummatum est. —Ընտանեբար կը գործածուի և կը նշանակէ՝ ամէն բան հատած է։ (Այս բառերն երբեմն իբր գոյական ալ կը գործածուին վերջ, կատարած նշանակութեամբ։ (La bataille de Pharsale fut le *consummatum est* de la liberté romaine.

Ծանօթ. —Այս բառերն վերջին խօսքերն են Յիսուս Քրիստոսի՝ խաչելութեան վրայ։

## CONTE

990. Conte de ma mère l'oie, de bonne femme, de vieille, à dormir debout, de կամ à la cigogne, de Peau d'Ane. —Մանուկները զբօսեցնելու առասպել (մասալ)։

## CONTER

991. En conter à quelqu'un. —Սուտ բաներ ըսել. (en faire accroire). —Քծնաբանել։ Voyez ce galant; comme il *en conte* à cette jeune femme!

992. Conter des fagots à quelqu'un. —Անհիմն, սուտ բաներ ըսել։

Ծանօթ. —Առաջ կ'ըսէին compter des fagots pour des cotrets, որ կը նշանակէր խաբել, որովհետև cot-ret ին արժէքը fagot ին արժէքէն աւելի էր. յետոյ յս պարբերութիւնը կրճատեցին և compter ն con-ter ի փոխեցին։

993· Conter fleurettes (à une fille) · —Քծնաբանել։

CONTRACTER

994· Contracter des dettes. —Պարտք ընել, պարտքի տակ մտնել։ Je n'aime pas à *contracter des dettes.*

995· Contracter amitié. — Բարեկամութիւն հաստատել։

996· Contracter une maladie. — Հիւանդութիւն մը առնել։

CONTRAINDRE

997· La nécessité contraint la loi. — Հարկ լուծանէ զօրէնս · (Կ'ըսուի նաեւ Nécessité n'a pas de loi).

CONTRAINTE

998· Contrainte կամ contrainte par corps. — Պարտապահանջն պարտատէրն բանտը դնել՝ ստիպելու համար զայն պարտքը վճարելու ։

CONTREBANDE

999· De contrebande. —Հրամանի, օրինաց հակառակ, գողունի։ Un travail *de contrebande.*

1000· Homme de contrebande. — Կասկածելի, անվստահելի մարդ ։

### CONTRE-POIL

1001. Prendre une affaire à contre-poil. —Անյաջող կողմէն գործի մը ձեռք զարնել։ Il n'est pas étonnant qu'il n'ait réussi dans l'affaire; il l'a *prise à contre-poil.*

1002. Prendre quelqu'un à contre-poil. —Խօսիլ կամ գործել՝ մէկը գրգռելու, բարկացնելու համար։ Ne prenez pas à la lettre toutes ses paroles: il vous *prend à contre-poil.*

### CONTRIBUTION

1003. Mettre un auteur à contribution. —Մատենագրի մը գործէն տեղեկութիւն քաղել։

### COQ

1004. Le coq du village. —Ջոջ։

1005. Heureux comme un coq en pâte. —Կ'ըսուի մէկու մը համար որ նստած տեղը խիստ հանգիստ է, և որոյ գլուխը միայն կ'երեւայ։

**Ծանօթ.** — Փասիաններու և կաքաւներու կարկանդակները (pâté) տեղի տուած են այս առակին։ Հայսին մէջտեղ կը գտնուի ծակ մը ուրկէ կ'անցնի Թռչնոյն գլուխը. — ԺԶ. դարու մէջ կ'ըսէին heureux comme rat en paille վերի ասացուածին տեղ։

1006. Sauter de coq à l'âne. —Անյօդ, կցկտուր խօսքեր ընել։ (Այս իմաստով coq à l'âne իբր

գոյական եւս կը գործածուի · Il m'a répondu par un *coq à l'âne.* —Il fait toujours des *coq à l'âne*)։

### COQUE

1007· Ne faire que de sortir de la coque կամ coquille. — Հաւկիթէն նոր ելած ըլլալ, այսինքն՝ տակաւին համբակ, տղայ ըլլալ։ (Ռամկօրէն կ'ըսենք դեռ երէկ [illegible] ըլլալ, եւն) · *Il ne fait que de sortir de la coquille*, et il ose déjà se permettre de parler sur ces choses-là.

### COQUECIGRUE

1008· A la venue des coquecigrues. — Ծռազատկին ։ Telle chose arrivera *à la venue des coquecigrues.*

1009· Vous aurez des coquecigrues. —Մերժման ձեւ մ'է, որ կը նշանակէ պարզապէս՝ բան մը չը պիտի տամ ձեզ։

### COQUELUCHE

1010· Être la coqueluche de la ville. —Քաղաքին մէջ երեւելի, ամենուն բերանը ըլլալ։ Il *est la coqueluche de la ville*; il n'est personne qui ne le connaisse.

1011· Être la coqueluche des femmes. —Կանանց սիրելի ըլլալ։ Ce jeune homme a des manières bien galantes; il *est la coqueluche des femmes.*

### COQUILLE

1012· Faire rentrer quelqu'un dans sa coquille. —Խոնարհեցնել զոք՝ յիշեցնելով անոր իւր նախկին վիճակը։ Il est allé jusqu'à décliner ses parents ? Bon ! je saurai bien le *faire rentrer dans sa coquille.*

1013· Ne pas donner ses coquilles. —Խիստ խնայող ըլլալ. ամենափոքր շահն անգամ չկորսնցնել։

### COR

1014· Demander, vouloir à cor et à cri. —Ուժգին, սաստկապէս ուզել։

### CORAM

1015· Coram populo. —Այն երկու լատին բառերն կը նշանակեն հասարակութեան, ժողովրդեան առջև։ Parler *coram populo*, արձակ համարձակ խօսիլ։

### CORDE

1016· Toucher la grosse corde, la corde sensible. —Կարեւոր գործի մը վրայ խօսիլ։ Voilà qu'on *touche la grosse corde.*

1017· Ne touchez pas cette corde ! —Իւր առջեւ այդ բանին վրայ մի՛ խօսիք, գէշութիւն կ'զգայ։

1018· Friser la corde. — Կախաղան ելնելու վտանգէն մազապուր ազատիլ. —Վտանգի մէջ ըլլալ։

Ծանօթ. —Friser, *հոս մերժնալ կը նշանակէ։ Այս իմաստով կ'ըսուի նաեւ* Friser l'intempérance, friser le vol, *եւն։*

1019. Danser sur la corde. —*Վտանգի մէջ, վտանգաւոր տեղ մ'ըլլալ։* Mon ami, *nous dansons sur la corde*, ne songeons qu'à nous sauver au plus vite de ce lieu infernal.

1020. Avoir plus d'une corde à son arc. —*Շատ միջոցներ, հնարքներ ունենալ յաջողելու համար։*

1021. La corde d'Ocnus. —*Ջուր ջանք, անօգուտ վաստակ։* C'est *la corde d'Ocnus.*

Ծանօթ. —*Օքնիւս, աշխատասէր Յոյն մը, որուն կինը կը վատնէր ինչ որ ինքն վաստկէր, ներկայացուած էր շինելով կնիւնէ լար մը մատակ իշու մը մօտ որ այս լարը հետզհետէ կ'ուտէր։*

1022. Mettre la corde au cou à quelqu'un. —*Մէկու մը կորստեան պատճառ ըլլալ. վտանգաւոր գործի մը մէջ մտցնել մէկը։* La trop grande indulgence de son père lui a *mis la corde au cou.*

1023. Avoir de la corde de pendu. —*Խաղի կամ ձեռնարկած բանին մէջ յաջող ըլլալ։*

Ծանօթ. —*Ռամիկ նախապաշարում մը ընդերկար մեծ զօրութիւն մը վերագրած է կախաղանին։*

1024· Montrer la corde. —*Գործին գէշ կողմը ցուցնել։*

1025· Gens de sac et de corde. — *Զարագործ, ամէն չարիք գործելու կարող մարդիկ, արժանի մահուան։*

**Ծանօթ**· — *Ժամանակաւ երկու սովորական մահապատու գործիքներն էին չուանը* (corde) *կախելու համար, և պարկը որու մէջ կը դնէին ոճրագործը և գետը կը նետէին։*

1026· Il ne faut pas parler de corde dans la maison d'un pendu (առակ). —*Ակումբի մը մէջ, պէտք է զգուշանալ խօսելէ այնպիսի նիւթերու վրայ որք կրնան ծածկեալ յանդիմանութիւն մ'ըլլալ ներկայ գտնուողներէն մէկուն։*

## CORDON

1027· N'être pas digne de dénouer les cordons des souliers de quelqu'un. — *Ուրիշէ մը ստորին ըլլալ։* *Il n'est pas digne de dénouer les cordons des souliers* de son oncle.

## CORDONNIER

1028· Les cordonniers sont souvent les plus mal chaussés. — *Կօշկակարք յաճախ ամենէն գէշ կօշիկ կը հագնին.* ([illegible])։

## CORINTHE

1029· Tout le monde ne peut pas aller à Corinthe (առակ). — *Ամէն մարդու տրուած չէ խիստ*

tin. —*Ձիս խաբելու չափ խորամանկ չ'ես*. —*Ես ձեզմէ առաջ հարկ եղած զգուշութիւններն ձեռք առած էի*։

### MEA CULPA

2780· Dire, faire son meâ culpâ de quelque chose. —*Յանցանքը խոստովանիլ, մեղայ ըսել*։ Combien de gens, soit en morale, soit en politique, ont dû dire leur *meâ-culpâ*.

Ծանօթ. —*Այս բառերը խոստովանանքին աղօթքին կը վերաբերին եւ բառ առ բառ կը նշանակեն՝ իմ յանցանքովս*։

### MÈCHE

2781· Éventer la mèche. —*Դաւաճանութիւն մը, դաւադրութիւն մը երեւան հանել*։

2782· Il n'y a pas de mèche. —*Հնար չ'կայ*։

### MÉDAILLE

2783· Le revers de la médaille. —*Գործի մը, բանի մը գէշ կողմը*։ On vous a dit du bien de cet homme, mais voyez *le revers de la médaille*.

2784· Toute médaille a son revers. —*Ամէն բան իւր գէշ կողմերն ալ ունի*։

2785· Tourner la médaille. —*Խնդիրին ուրիշ կողմէն քննել*։

### MÉDECINE

2786· Avaler la médecine. —*Անհաճոյ բան մը յանձն առնել*։

## MÉDUSE

2787· Tête de Méduse. —*Մեդուսայ գլխուն կը բաղդատուի այն անձն կամ իրն, որոյ յանկարծական երեւոյթն երկիւղ և ապշութիւն կը պատճառէ։* Il tendit le papier au jeune homme éperdu. « Dites, s'écria-t-il d'une voix étranglée, dites que l'assertion contenue dans cette lettre est fausse. » Le pauvre garçon, l'œil hagard, les lèvres tremblantes, les joues sans couleur, comme si on lui eût présenté *la tête de Méduse,* regardait le papier, où flamboyait sa condamnation, de ce regard vide et terne de la démence. —Son aspect fut pour moi *la tête de Méduse.*

**Ծանօթ**· — *Մեդուսա, մին ի Գորգոնայց, իւր երիտասարդութեան մէջ համբաւաւոր եղած էր իւր չքնաղ գեղեցկութեամբն ու վայելչագեղ մազերովն։ Իւր հպարտ բնաւորութեամբն մինչեւ իսկ համարձակեցաւ ինքզինքն Աթենասէն վեր դասել, գեղեցկութեան մասին։ Ասոր վրայ դիցուհին բարկանալով, անոր գեղեցիկ մազերը օձերու փոխեց, և անոր գլխուն տուաւ ահաւոր զօրութիւն մը, որ կը քարացնէր իրեն նայողները։ Պերսէոս Մեդուսայի գլուխը կտրեց, զոր գործածեց իւր թշնամիներն քարացնելու համար։*

## MÊLÉ, MÊLER

2788· Il a les dents mêlées. — *Ակռաները իրարմէ չ'կրնար զատել։ (Կ'ըսուի գինովի մը համար որ չ'կրնար խօսիլ)։*

2789· Mêler le ciel à la terre. —*Երկինք երկիր իրար անցնել։*

2790· Cette affaire se fera, à moins que le diable ne s'en mêle. —*Հակառակ ամէն արգելքներուն, ամէն պարագայի մէջ այս գործը պիտի կատարուի։*

2791· Cette affaire ne se fera pas, à moins que le diable ne s'en mêle. —*Անկարելի է որ այդ գործը կատարուի։*

### MÊME

2792· A même . . . — Manger à même. — *Պնակին մէջէն ուտել։* — Boire à même. *Շիշին մէջէն խմել։*

2793· Être à même de . . . —*Կարող, ի վիճակի ըլլալ։* Il n'est pas *à même de* résoudre ce problème. — Mettre à même de . . . — *Կարողացընել, ի վիճակի դնել։* Je l'ai mis *à même de* travailler utilement.

2794· Tout de même. —*Նոյնպէս, նոյն կերպով։* J'ai vécu glorieux, je mourrai *tout de même*. —Agissez *de même, tout de même.* —*Այսու հանդերձ։* Je n'y vais pas de bon gré, mais j'irai *tout de même*.

2795· Il veut avoir raison quand même. — *Միշտ իրաւունք ունենալ կ'ուզէ։*

### MENACER

2796· Menacer le ciel, les cieux. —Բանաստեղծութեան մէջ կը գործածուի և կը նշանակէ յերկինս բարձրանալ, երկինք հասնալ (ծառերու, լեռներու վրայ խօսելով)։ Ces arbres *menacent les cieux.*

### MÉNAGE

2797· Faire bon ménage. —Իրարու հետ սիրով ըլլալ (այր և կնոջ վրայ խօսելով)։

2798· Vivre de ménage. —Խնայողութեամբ ապրիլ։ Երբեմն ալ՝ հեգնօրէն գործածուելով՝ կը նշանակէ ունեցածը ուտել, կարասիքը ծախել ապրելու համար։

2799· Avoir ménage en ville. —Սիրուհի պահել։

2800· Faire des ménages. — Տնարարութիւն (ուրիշին) ընել։ Cette femme gagne sa vie à *faire des ménages*.

### MENSONGE

2801· Un mensonge puant. —Գոշաւոր սուտ։

### MENTIR

2802· Faire mentir le proverbe. —Առակը սուտ հանել, հասարակաց կարծեաց հակառակ եղող բան մը ընել, գործադրել։ (Օրինակի համար, մէկը որ կը յաջողի իր բնակած երկրին մէջ համբաւ վաստըկելու, յառաջանալու, սուտ կը հանէ nul n'est prophète chez soi առակը)։

2803· A beau mentir qui vient de loin (առած). —Հեռուէն եկողը շատ սուտեր կրնայ շինել։

2804· Il n'enrage pas pour mentir. —Սուտը իրեն համար նշանակութիւն չ'ունի, սուտը դանէր հոգէ դէ՝ կ'ուտէ։ (Նոյն իմաստով կը գործածուի նաեւ il ne se déchausse pas pour mentir)։

### MENU

2805· Menus plaisirs. —Մանր ծախք։ Cet enfant a tant par semaine pour ses *menus plaisirs*.

2806· Menu peuple. —Սորրին ժողովուրդ։

2807· Raconter par le menu. —Մանրամասնաբար, մի ըստ միոջէ պատմել։

### MENUET

2808· Que de choses dans un menuet ! —Հեգնական բացագանչութիւն որ կ'ուղղուի մէկու մը՝ որ իւր արհեստին չափազանց կարեւորութիւն կու տայ։

Ծանօթ. —Այս ասացուածն գործածած է Մարսէլ պարագէտն, որ բնաւ կարեւորութիւն չ'էր տար իւր արհեստին։

### MERCI

2809· Un homme sans merci. —Անգութ մարդ։

2810· Être, se mettre à la merci de quelqu'un. —Մէկուն իշխանութեան տակ, ձեռաց մէջ ըլլալ։

2811· Merci de ma vie! merci de moi! —Բարկութիւն ցուցնող ձայնարկութիւններ են։

## MERLE

2812· Un fin merle. —Խորամանկ, խորագէտ մէկը։

2813· Si vous faites cela, je vous donnerai un merle blanc. —Եթէ այս բանը ընես՝ ճըրագ կը վառեմ. անկարելի է որ այդ բանը կարենայք ընել։

2814· Dénicheur de merles. —Ճարտար և շահագէտ մէկը։

2815· Faute de grives on prend, on mange des merles (առած). —Առ ի չգոյէ լաւագունին՝ պէտք է լաւովն գոհանամք։

## MERVEILLE

2816· A merveille. —Շատ աղէկ, սքանչելի կերպով։ Il danse à merveille. —Comment vous portez-vous? —*A merveille.* —Ce chapeau vous va *à merveille*.

2817· Pas tant que de merveille. —Ոչ այնչափ շատ։ A-t-il beaucoup d'esprit? —*Pas tant que de merveille.*

2818· Faire merveilles կամ des merveilles. —Սքանչացում պատճառել։ Nos deux jeunes gens *font merveilles*, l'un à la maison, l'autre à l'estancia. Je n'ai jamais vu de garçons plus actifs et plus zélés.

2819· Dire des merveilles de . . . —*Շատ չափ գովել*։

2820· Promettre monts et merveilles, *կամ* monts et vaux. —*Մեծ մեծ բաներ խոստանալ*։

### MESSE

2821· Messe basse *կամ* petite. —*Թիւ պատարագ* ։

2822· Grand' messe *կամ* messe haute. —*Ձայնաւոր պատարագ* ։

### MESURE, MESURER

2823· Au fur et à mesure. —*Որչափ* . . . , *ըստ չափու* . . . ։

Ծանօթ· —Fur *կու գայ հին* fuer *բառէն որ կը նշանակէ համեմատութիւն, և որ աւելորդութեամբ գրուած է, ինչպէս Ֆրանսերէն շատ բառերու մէջ կը տեսնուի այս բանն*. bel et bien, les us et coutumes, les frais et dépens, *ևն* ։

2824· Se mettre en mesure de . . . , prendre des mesures. —*Կարեւոր միջոցները ձեռք առնել*։

2825· Faire quelque chose par compas et par mesure. —*Ճշդութեամբ և զգուշութեամբ ընել բան մը*։ (*Նոյն իմաստով կը գործածուի նաև* avec poids et mesure.)

2826· Avoir deux poids et deux mesures. —*Աչառութեամբ, կողմնակցութեամբ դատել*։

2827. Donner la mesure. —Կարողութիւնը կամ հանճարը ցուցնել։

2828. Rompre les mesures de quelqu'un. —Մէկուն խորհուրդներուն արգելք ըլլալ։

2829. Être en mesure de faire une chose. —Բան մ'ընելու կարողութեան մէջ ըլլալ։

2830. Mettre hors de toute mesure. —Սաստիկ բարկացնել։

2831. Serrer la mesure. —Վիճաբանութեան մէջ հակառակորդները նեղը ձգել։

2832. Mettre quelqu'un hors de mesure. —Մէկուն խորհուրդները խանգարել, աւրել։

2833. A brebis tondue, Dieu mesure le vent (առակ). —Աստուած չ'ղրկեր մեզ առաւել չարիք քան զոր կրնանք կրել, տանիլ։

2834. Mesurer la terre. —Փոխաբերաբար գործածուած ատեն կը նշանակէ՝ ինկնալ։

## MÉTIER

2835. Apprendre à quelqu'un son métier. —Մէկը պատժել։

2836. Faire métier et marchandise d'une chose. —Բան գործ ընել։ Cet homme ne dit que des mensonges, il en a *fait métier et marchandise.* —Les hypocrites *font métier et marchandise* de dévotion.

2837· Avoir cœur կամ le cœur au métier. — Ախորժով, փութով, խանդով աշխատիլ։

2838· Chacun son métier, les vaches seront mieux gardées (առակ)· —Եթէ ամէն մարդ իրեն գործերուն խառնուի, ամէն բան աղէկ կ'երթայ։

2839· Gâter le métier. —Ի վնաս արուեստակ-ցաց, քիչ վարձքով աշխատիլ կամ աժան գնով ծա-խել։

METTRE

2840· Mettre en. —Թարգմանել։ Je vous envoie une lettre que j'ai *mise en* français.

2841· Mettre du sien. —Իւր ունեցածէն նպաստ մատուցանել· —Քովէն, մտքէն աւելցնել։

2842· Mettre de . . . —Մասնակից ընել։ Le roi le *mettait de* tous ses plaisirs.

2843· Mettre bien ensemble deux personnes. —Հաշտեցնել։ Ներհակն է mettre mal ensemble. La jalousie les a *mis mal ensemble*. Նախանձը ա-նոնց մէջ գրգռութիւն ձգած է։

2844· Se mettre sur . . . —Բանի մը վրայ, մէկու մը վրայ խօսիլ։

2845· Se mettre bien auprès de quelqu'un. — Մէկուն աչքը մտնել։

2846· Se mettre avec une femme. —Կնոջ մը հետ ամուսնաբար ապրիլ։

## MEUBLE, MEUBLÉ

2847· Se mettre dans ses meubles. —Սենեակը զարդարելու համար կահ կարասիք գնել։

2848· Être dans ses meubles. —Կահաւորեալ սենեակ ունենալ։

2849· Avoir la bouche bien meublée. —Գեղեցիկ ակռայներ ունենալ։

2850· Avoir la tête bien meublée. —Բազմահմուտ ըլլալ։

## MIEN

2851· J'y mets du mien. —Ես ալ ձեռքէս եկածը կու տամ։ —Je mets, j'ajoute du mien. —Քովէս, մտքէս կ'աւելցնեմ։

2852· Jai bien fait des miennes dans ma jeunesse. —Երիտասարդութեանս մէջ շատ շաղաշտութիւններ (ցօֆօսլըքլան) ըրած եմ։

## MIEUX

2853· Je ferai de mon mieux. — Ձեռքէս եկածը, կրցածս պիտի ընեմ։ —Il a fait du mieux qu'il a pu. Կրցածը ըրաւ։

2854· A qui mieux mieux. —Իրարու հետ մրցելով։ Faire quelque chose *à qui mieux mieux.*

2855· Ses affaires vont de mieux en mieux. —Իր գործերն ամենալաւ կերպով յառաջ կ'երթան։

—Il écrit de mieux en mieux. Երթալով գիրը կը շտկէ ։

2856. Le mieux est l'ennemi du bien (առած). —Լաւագոյնը լաւին թշնամին է, այսինքն՝ յաճախ բան մը կատարելագործել ուզելով, աւելի կ'աւրեմք, կ'ապականեմք զայն ։

2857. Mieux vaut tard que jamais (առած). —Լաւ է անագան քան երբէք ։

MINE

2858. Eventer la mine. —Փոխաբերաբար գործածուած ատեն կը նշանակէ գաղտնի խորհուրդ մը, դաւաճանութիւն մը երեւան հանել ։ (Նոյն իմաստով կը գործածուի նաեւ éventer la mèche) ։

2859. Faire mine de quelque chose. —Երեւցնել, կարծեցնել ։ Cet homme que vous voyez, *fait mine* de s'approcher de nous.

2860. Faire bonne, mauvaise կամ grise mine à quelqu'un. —Մէկը սիրով, դժկամակութեամբ ընդունիլ ։

2861. Faire la mine à quelqu'un. — Մէկուն խոժոռ դէմք ցուցնել ։

2862. Faire des mines. — Կոտրտուիլ. — Աչք ընել (Էշարէթ Էթմէք) ։ J'ai eu beau lui *faire des mines*. il ne m'a pas compris.

2863. Faire des mines կամ de petites mines à quelqu'un. — Աչք ընել ։ Cet homme *fait des mines* à toutes les femmes.

2864· Faire jouer des mines. —Խորհուրդ մը, դաւաճանութիւն մը ի գործ դնել։

2865· Faire bonne mine à mauvais jeu. — Գէշ լրոյ մը, ձախող արկածի մը տուած նեղութիւնը, տհաճութիւնը երեսին վրայ չը ցուցնել։

MIRACLE

2866· Cela se peut sans miracles. —Այդ գործը դիւրին է։

2867· Faire des miracles. —Հեգնօրէն կ'ըսուի մէկու մը համար որ անյաջողակ (շլէմաղ) է, որ բան մը վար ձգած է կամ բան մը կոտրած է։

2868· Il ne faut pas crier miracle. —Զարմանալու բան չ'կայ, սովորական բան մ'է։

MIRER

2869· Mirer un emploi. —Պաշտօնի մը աչք տնկել։

MISE

2870· Cet homme est de mise. —Այս, այդ մարդը բարեկիրթ է։

2871· Cette excuse n'est pas de mise. —Այդ պատճառաբանութիւնն ընդունական չ'է։

2872· Ces espèces-là ne sont plus de mise. — Այդ դրամներն այլ եւս չ'են անցնիր։

## MISÈRE

2873. Faire des misères. —Մէկը վշտացնել։
2874. Collier de misère. —Ծանր աշխատութիւն։

## MITAINE

2875. Prendre des mitaines (pour faire quelque chose). —Զգուշութիւն ի գործ դնել։ (Նոյն իմաստով կը գործածուի նաեւ prendre des gants.)

## MITHRIDATE

2876. Vendeur de mithridate. —Խաբեբայ բըժիշկ. —Մեծ մեծ բաներ խոստացող և բան մը չ'ընող։

## MITON

2877. Onguent miton mitaine. —Դեղ՝ որ ոչ օգուտ կ'ընէ ոչ վնաս. —Ջուր հնարք։

## MOINDRE

2878. C'est le moindre de mes soucis. —Հոգս հատեր էր։

## MOINE

2879. Moine bourru. —Երեւակայական ուրուական որ կիներն ու մանուկները կը վախցնէր։ (յԱրեւելս խառախանճօլըղի վարած պաշտօնին համանման էր moine bourru ին պաշտօնն)։ Փոխաբերաբար կը նշանակէ նաեւ դժուարահաճոյ, անհամբոյր մարդ։ Cet homme-là est un *moine bourru*.

2880· Pour un moine on ne laisse pas de faire un abbé (առակ)· —*Մէկ հոգւոյ դիմադրութիւնը արգելք մը չ'է գործոյն ելքին, խնդրոյ մը խորհրդակցութեան։*

2881· Être gras comme un moine. —*Շատ գէր ըլլալ։*

2882· Pour un moine l'abbaye ne faut pas (առակ)· —*Ժողովքի մը մէջ մէկ հոգւոյ բացակայութիւնը արգելք մը չ'է խնդրոյ մը լուծման, որոշման։*

2883· Le moine répond comme l'abbé chante (առակ)· —*Ստորակարգեալք, իրենց պետին հաճելի ըլլալու համար, անոր ըսածը կ'ըսեն և անոր ըրածը կ'ընեն։*

2884· Attendre quelqu'un comme les moines font l'abbé. —*Մէկուն ճաշի չ'սպասել։*

**Ծանօթ**· —*Վանքերու մէջ կերակուրի ժամը այնքան լաւ կարգադրուած է, որ ճաշին զանգակը զարնուելէն վերջը սեղան կը նստին՝ առանց մէկուն սպասելու, ոչ իսկ վանահօր։*

2885· L'habit ne fait pas le moine (առակ)· —*Պէտք չ'է զմարդիկ արտաքին երեւոյթէն դատել։*

2886· Donner le moine à quelqu'un. —*Քունի մէջ եղող մէկուն ոտքին մատին առասան մը կապել և քաշել՝ զայն արթնցնելու համար։*

### MOINS

2887· Ne . . . pas moins, n'en . . . pas moins.

—Սակայն և այնպէս։ Je suis souffrant, mais je *n'en* irai *pas moins* à la cérémonie.

2888· Encore moins. —Ո՛ւր մնաց . . . ։ Une telle jalousie n'existe point entre les hommes et *encore moins* entre Dieu et l'homme.

2889· Ne . . . pas le moins du monde. —Ա-մենեւին, բնաւ։ Le roi *ne* s'aperçut *pas le moins du monde* de cette scène.

2890· Moins que rien. —Չնչին։ Le présent que je vous fais est *moins que rien*. —Cet homme -là est *moins que rien*.

2891· En moins de rien. —Քիչ ժամանակի մէջ։ Il a mangé son bien *en moins de rien*.

2892· Ne . . . rien moins que. —Այս բառերը՝ être օժանդակով գործածուած, երբ ետեւնուն ա-ծական մ'ունենան, բացասական իմաստ կու տան։ Իսկ եթէ այս բառերէն ետքը գոյական մը գտնուի՝ մերթ բացասական և մերթ հաստատական իմաստ կ'ունենան այս բառերն։ Il *n'est rien moins que* sage, խելացի չ'է։ —Vous pouvez vous dispenser du respect à son égard, car il *n'est rien moins que* votre père, քանզի նա ձեր հայրը չ'է։ —Vous lui devez du respect, car il *n'est rien moins que* votre père, որովհետեւ ձեր հայրն է։

Կայ նաեւ ne rien de moins որ անդէմ բայի հետ գործածուելով՝ բացասական իմաստ կու տայ։ Il n'y a *rien de moins* vrai que cette nouvelle, այդ լուրին չափ սուտ բան չ'կայ։

2893· Nous avons tous les ans douze mois. — Ասացուած՝ որ կը նշանակէ թէ տարուէ տարի կը ծերանամք առանց զգալու։ Ah dame ! J'étais plus jeune que je ne suis ; mais c'est que *nous avons tous les ans douze mois,* comme vous savez.

### MOITIÉ

2894· De moitié, de la moitié. —Յոյժ։ Cette sauce est trop poivrée *de moitié.*

2895· Être de moitié, se mettre de moitié. — Շահը և վնասը մէկուն հետ հաւասարապէս բաժնել։

2896· Être de moitié. —Մասնակից ըլլալ։

### MOMENT

2897· Pour le moment. —Հիմակու հիմա, առայժմ։ *Pour le moment,* je n'ai pas besoin de ces livres-là.

2898· Du moment que. —Քանզի, քանի որ։ *Du moment que* votre père y consent, je n'ai plus rien à dire.

### MOMIE

2899 C'est une vraie momie. —Կ'ըսուի թուխ և նիհար և չոր անհոգ մէկու մը համար։

### MONDE

2900· De par le monde. —Անորոշ ասացուած որ կը գործածուի ուր և է, մը նշանակութեամբ։ On

dit qu'il aime une veuve *de par le monde* qui est bien plus riche que vous. —Il y a *de par le monde* un homme qui կա ։

2901· Nous sommes le mieux du monde ensemble. —Իրարու հետ շատ աղէկ, շատ սիրով եմք ։

2902· Pas le moins du monde. —Բնաւ, և ոչ մէկ կերպով ։

2903· Venir au monde. —Ծնիլ, աշխարհ գալ ։

2904· Mettre au monde. —Ծնել, ծնունդ տալ ։

2905· Mettre un monde entre . . . —Մեծ տարբերութիւն դնել . . . մէջ ։

2906· Tout le monde. —Ամէն մարդ ։

2907· Connaître son monde. —Իւր անձին չափը գիտնալ ։ —Apprendre à quelqu'un à connaître son monde. —Մէկուն իւր անձին չափը սորվեցնել, ցուցնել ։

2908· Aller dans le monde. —Ընկերութիւններ, ընտանիքներ, պարահանդէսները յաճախել ։

2909· Savoir bien son monde. —Մարդոց հետ վարուելու եղանակին, ընկերական սովորութեանց տեղեակ ըլլալ ։ Laissez-le faire, il *sait bien son monde* ։ (Ներհակն է manquer de monde.)

2910· Le grand monde. —Բարձր ընկերութիւն աւագանիք ։ (Ներհակն է le petit monde.)

2911· Ou ne peut contenter tout le monde e

son père (առակ)․ —Ամէն մարդուն ճաշակին համեմատ չեմք կրնար գործել։

Ծանօթ․ —Լա Ֆօնդէնի Ջաղացպանն, էշն և որդին խորագրով առակէն առնուած են այս բառերը։

2912․ C'est le monde renversé. —Աշխարհ շըրջեր է․ (տէ–նէօ Բէր․ տէմօնժ–շ։ Կը գործածուի երբ օրէնքի, կարգի կանոնի, տրամաբանութեան հակառակ բան մը կ'ընէ ոք, ինչպէս, երբ տղայ մը իւր ծնողաց կը հրամայէ։)

2913․ Aller dans l'autre monde. —Մեռնիլ, անդիի աշխարհքը երթալ։

MONNAIE

2914․ Rendre à quelqu'un la monnaie de sa pièce. —Վրէժ խնդրել։

2915․ Payer quelqu'un en monnaie de singe. —Պարտատէրը ծաղրել՝ փոխանակ պարտքը վճարելու։ (Գրեթէ նոյն իմաստով կը գործածուի payer en gambades)։

2916․ Battre monnaie. —Ստակ ճարել։

MONSIEUR

2917․ Monsieur Lustucru. —Վերադիր որ կը գործածուի ընտանեբար ժըժժը, անփորձ մէկու մը համար։

2918․ Faites des perruques, monsieur André. —Պէտք է որ իւրաքանչիւրն միայն իւր արհեստովը զբաղի։

Ծանօթ. — Կօշկակարն չօշէն առակին մի փոփոխութիւնն է այս, զոր Վօլդէռ ըրած է. Շարլ Անտրէ կեղծամագործն ոտանաւոր մը ուղղած էր մեծահանճար գրագէտին ըսելով «Սիրելի պարոն արուեստակից». Վօլդէռ անոր վերոյիշեալ խորհուրդն տուաւ, որ առակի կարգ անցած է.

2919. Marier sa fille à monsieur Duverger. — Կ'ըսուէր երբեմն մօր մը որ իւր հարսնցու աղջիկը կը ծեծէր.

2920. Vous êtes orfèvre, monsieur Josse. — Այս բառերը կը նկարագրեն շահ մը՝ օգտակար խրատի մը երեւոյթին տակ ծածկուած. Dieu vous garde de vous trouver jamais à table à côté d'un poète incompris. Toute sa conversation roulera sur la rime et l'enjambement, Pour lui, la prose n'est qu'une enfilade de mots sans expression, la musique un bruit assourdissant, la peinture un amalgame de couleurs mal broyées, etc. Heureusement pour le droit de réplique, la politesse ne défend pas de lui dire: *Vous êtes orfèvre, monsieur Josse.*

Ծանօթ. — Վերոյիշեալ պարբերութիւնն առնուած է Մոլիէռի Սէր բժիշկ անուանեալ կատակերգութենէն. Սկանարէլ, որ չկրնար իւր աղջկան մելամաղձոտութեան մեկնութիւն մը տալ ինքզինքին, իւր ազգականներուն և դրացիներուն խորհուրդ կը հարցընէ. Պարոն Ժօս ոսկերիչն խորհուրդ կու տայ թէ ադամանդից գեղեցիկ հաւաքածոյ մը միայն կարող

է իւր աղջկան տրտմութիւնը փարատելու ։ « Դուք ոսկերիչ էք, պարոն Ժօս, և ձեր խորհուրդը կը յիշեցնէ ինձ այն մարդը՝ որ իւր վաճառքը ձեռքէ հանել կ'ուզէ ։

2921· Comme monsieur de la Palisse. — Այս բառերը կը գործածէ ոք երբ անմտութիւն մը կը լսէ ։ Յաճախ կ'աւելցուի Qui, s'il n'était pas mort, serait encore en vie.

Ծանօթ· — Ակնարկութիւն Monsieur de la Palisse անուանեալ երգի մը, որ սապէս կ'սկսի ·

Monsieur d' la Palisse est mort
En perdant la vie;
Un quart d'heure avant sa mort,
Il était encore en vie.

## MONSTRE

2922· Se faire un monstre de quelque chose. —Սոսկալ բանէ մը որ՝ իրօք՝ բնաւ սարսափեցուցիչ բան չունի ։

## MONT

2923· Promettre monts et vaux, monts et merveilles. —Մեծ մեծ բաներ խոստանալ ։

2924· Par monts et par vaux. —Ամէն կողմ, լեռ ու ձոր ։ Je l'ai cherché *par monts et par vaux.*

## MONTAGNE

2925· La montagne a enfanté une souris. — Լեռան ծնաւ զմուկն չնչին ։ (Կ'ըսուի երբ մէկը մեծ

մեծ բաներ կը խոստանայ և բան մը չ'կատարեր կամ չնչին բան մը կը կատարէ ։)

Ծանօթ. —Անհարկութիւն La Fontaineի առակներէն միոյն անուանեալ La montagne qui accouche.

MONTÉ, MONTÉE

2926· Être monté contre quelqu'un. —Մէկուն դէմ բարկացած ըլլալ ։

2927· Faire sauter les montées à quelqu'un. —Մէկը անարգանօք կամ բռնի տունէն, սենեկէն վռնտել ։

MOQUER (SE)

2928· Se moquer de qu'en dira-t-on. —Ուրիշներուն խծբծանքը հոգը չընել ։

2929· S'en moquer comme de l'an quarante. —Խօսքի նիւթ եղող անձէն կամ իրէն բնաւ չը վախնալ ։

Ծանօթ· —Ժ·Ա· դարու մէջ կարծիք մը տարածուած էր թէ Յիսուս Քրիստոսի սահմանած հազար ամեայ տարիներն՝ իբր վախճան իւր եկեղեցւոյն և մարդկային ընկերութեան, այդ դարու քառասներորդ տարին պիտի լրանային ։ Երբ այդ արհաւրաբեր ժամանակամիջոցն անցաւ, վերոյիշեալ առակն ծնունդ առաւ ։

2930· Se moquer de Gautier et de Garguille. —Մէկուն չ'խնայել, ոչ հարուստի ոչ աղքատի ։

2931· La pelle se moque du fourgon (առակ). —Մրոտն կը ծաղրէ զմրճոտն (ղազան ղազանա տիպին ղա-րա տըր տէմիշ)։

MORCEAU

2932· Doubler les morceaux, mettre les morceaux doubles կամ en double. —Շուտով ուտել։

2933· Tailler les morceaux à quelqu'un. —Մէկուն ծախքը սահմանել։

2934· Rogner les morceaux à quelqu'un. —Մէկուն շահը կամ եկամուտը նուազեցնել։

MORDIENNE

2935· A la grosse mordienne. —Անպաճուճ-տաբար, հարեւանցի, առանց պաճուճանաց։ Nous nous contentâmes d'apprêter tout *à la grosse mordienne*.

MORDRE

2936· Mordre à quelque chose. —Զարգանալ. յառաջադէմ ըլլալ։

2937· Mordre la poussière. —Պատերազմի մէջ մեռնիլ։

2938· Mordre le sein de sa nourrice. —Ապե-րախտ գտնուիլ։

MORT

2939· Faire le mort. —Փոխաբերաբար գործած-ուած ատեն կը նշանակէ պատասխան չտալ։ Il n'a rien répondu à plusieurs de mes lettres, il *fait le mort*.

2940· Mourir de sa belle mort կամ de sa mort naturelle. —Բնական մահուամբ մեռնիլ ։

2941· Mort aux rats. —Մկնդեղ ։

2942· A la vie et à la mort. —Միշտ ։ Je suis votre ami *à la vie et à la mort.*

## MORTIER

2943· Cette soupe est du mortier. —Այս ապուրը լափայի կը նմանի, այսինքն՝ շատ թանձր է ։

## MORVEUX

2944· Qui se sent morveux se mouche (առակ). —Խնլոտը քիթը կը սրբէ, այսինքն՝ յանցաւոր եղողը այս խօսքերը իր վրայ առնելու է. (Նոյն իմաստով կը գործածուի qui se sent galeux se gratte) ։

## MOT

2945· Bon mot. —Հանճարեղ կատակաբանութիւն ։

2946· Gros mots. —Թշնամալից, նախատական խօսք ։

2947· Traîner ses mots. —Ցամր յամր խօսիլ (գրեթէ նոյն իմաստով կը գործածուի compter ses mots.)

2948· N'entendre pas un mot de quelque chose. —Բանի մը անգէտ ըլլալ բոլորովին ։

2949· N'avoir pas le mot à dire. —Բերանը բանալու իրաւունք չ'ունենալ ։

2950· Avoir le dernier mot. —Վիճաբանութեան մէջ յաղթել, հակառակորդը պապանձեցնել ։

2951· Disons deux mots à cette bouteille de bourgogne, à ce pâté. —Սա պուրկօնեան գինին խմել, սա կարկանդակը ուտել սկսինք ։ (Dire deux mots à quelque chose պարզապէս կը նշանակէ՝ բանի մը վրայ խօսիլ ։ )

2952· Ne sonner կամ ne souffler mot. —Բերանը չ'բանալ, բան մը չ'խօսիլ ։

2953· Trancher le mot. —Անկեղծօրէն, արձակ համարձակ միտքը յայտնել, խօսիլ ։ . . . Mais il est d'autres spéculateurs connus à la Bourse. Ceux-là, *tranchons le mot,* ce sont des joueurs dans toute l'acception du mot.

2954· Le dernier mot. —Վերջին գին ։ C'est votre *dernier mot,* ça ?

2955· Prendre quelqu'un au mot. — Մէկուն մատուցած կամ առաջարկած բանը անմիջապէս ընդունիլ ։ Je lui ai offert ma bourse, il m'a *pris au mot.*

2956· Se donner le mot. —Խօսք մէկ ընել ։

2957· Souligner ses mots. —Խօսած ատեն՝ բառերէն ոմանց վրայ շեշտել, որոց աւելի մեծ կարեւորութիւն տալ կ'ուզուի ։

## MOUCHE

2958· Tomber dru comme mouches. —*Ծուտ և շատ իյնալ, տեղալ։*

2959· Faire la mouche du coche. —*Ինքզինքին կարեւորութիւն տալ, և յինքն վերագրել յաջողութիւնն գործոյ մը որոյ մէջ բնաւ մաս չ՚է ունեցած։*

Ծանօթ· —*Ակնարկութիւն Լաֆոնդէնի* Le coche et la mouche *առակին։*

2960· On prend plus de mouches avec une cuillerée de miel qu'avec un tonneau de vinaigre (առակ)· —*Մեղրով աւելի ճանճ կը բռնուի քան թէ քացախով, այսինքն՝ հեզութիւնը բռնութենէն աւելի շատ գործ կը տեսնէ։*

2961· Prendre la mouche. —*Ոչինչ բանի մը համար բարկանալ։*

2962· C'est une fine mouche. —*Ճարտար և խորամանկ մէկն է։*

2963· Faire d'une mouche un éléphant. —*Պզտիկ բան մը մեծցնել, ոչինչ բանի մը կարեւորութիւն տալ* ([illegible])։

2964· Quelle mouche vous pique donc ? —*Ի՞նչ եղար։ (Կ՚ըսուի մէկու մը որ յանկարծ կը բարկանայ առանց իւր բարկութեանը պատճառը մեզ ծանօթ ըլլալու)։*

2965· Pattes de mouches. —*Բարակ և տձեւ գիր։*

## MOUCHER

2966· Ne pas se moucher sur sa manche. — *Կ'ըսուի մէկու մը համար որ աշխարհային գործոց մէջ փորձառութիւն ստացած է. փորձառու ըլլալ։*

2967· Il ne se mouche pas du pied. —*Սովորական մարդ մը չ'է. կարեւորութեան, վիճակի տէր մարդ է։*

Certes, monsieur Tartufe, à bien prendre la chose,
N'est pas un homme, non qui *se mouche du pied.*

2968· Du temps qu'on se mouchait sur sa manche. —*Տգէտ ժամանակաց մէջ, մարդոց մանկութեան ատեն։*

2969· Moucher la chandelle comme le diable moucha sa mère. —*Ճրագին քիթը առած ատեն ատեն մարել։*

Ծանօթ· —*Ըստ Գ. լը Կէի ակնարկութիւն մ'է* Le diable *յորջորջուած ոճրագործի մը, որ՝ դեռ չ'կախուած՝ իւր մօր վերջին հրաժեշտ տալու պատրուակաւ, փոխանակ զայն համբուրելու ակռայներովը անոր քիթը կտրեց։*

## MOUCHERON

2970· Où la guêpe a passé, le moucheron demeure. — *Յաճախ պզտիկը կը պատժուի և մեծը կ'ազատի, թէեւ երկուքն ալ մի և նոյն յանցանքը գործած ըլլան։*

## MOUCHOIR

2971· Jeter le mouchoir à une femme. —Կա-

նանց մէջէն մէկուն նախապատուութիւն տալ, դայն ընտրել իբր իւր սիրուհին :

### MOUDRE

2972· Moudre quelqu'un de coups. —Գանա-կոծել զոք :

### MOULE

2973· Le moule en est rompu *կամ* perdu. —Կաղապարը՝ խորտակուած, կորսուած է : (Կ'ըսուի հազուագիւտ իրի մը կամ անձի մը համար :)

2974· Bois de moule. —Ընտիր, ազնիւ փայտ :

### MOULIN

2975· Un moulin à paroles. —Ճառախօսու-թիւն. շատախօս (լաֆ տէյիրմէնի) : La Buci fait aller joliment *son moulin à paroles.*

2976· Entrer quelque part comme l'âne au moulin. —Արձակ համարձակ, առանց ո և է քաղա-քավարական ձեւի տեղ մը մտնել :

2977· Faire venir l'eau au moulin. —Ճահիլ, շահու աղբիւրներ գտնել :

2978· Il viendra moudre à mon moulin. —Ինծի կարօտ պիտի ըլլայ օր մը :

### MOURIR

2979· Cet homme mourra dans sa peau. —Այս մարդը իւր վատթար սովորութիւններն թողելիք չ'ունի :

2980· On ne sait ni qui meurt, ni qui vit (առակ). —*Ոչ մեռնողն յայտնի է ոչ ապրողը, հետեւաբար պէտք է մարդ իւր գործերն՝ նիւթապէս թէ բարոյապէս՝ ըստ այնմ կարգադրէ։*

2981· Venir mourir au gîte. —*Կենաց վերջին օրերն մայրենի երկրին մէջ անցնել։*

2982· Mourir de la mort de Roland. —*Ծարաւէ մեռնիլ։*

Ծանօթ· —*Կը կարծուի թէ Րօլան, որ Միջնադարեան վիպասանութիւնք այնքան նշանաւոր գործած են, Ռօնսըվօի ճակատամարտէն վերջը ծարաւէ մեռած ըլլայ։*

2983· L'un meurt dont l'autre vit (առակ). —*Ինչ որ մին կը մեռցնէ՝ ուրիշ մը կը կենդանացնէ, այսինքն՝ ինչ որ մէկուն երջանկութիւն կը բերէ, երբեմն ուրիշի մը ձախողանք կը բերէ։*

2984· Mourir ab intestat. —*Առանց կտակ ընելու մեռնիլ։*

### MOUSQUETAIRE

2985· Mousquetaire à genoux. —*Երբեմն կատակաբանօրէն այսպէս կ'անուանէին դեղագործի սպասաւորները։* Feu mon grand père était *mousquetaire à genoux.*

### MOUSSER

2986· Faire mousser un succès. —*Յաջողութիւն մը մեծցնել, իրականէն շատ աւելի մեծ երեւցնել։*

## MOUTARDE

2987· C'est de la moutarde après dîner. — Այլ եւս պէտք չը կայ այդ բանին, գործը գործէն անցած է։

2988· Sucrer la moutarde. —Յանդիմանութիւնը մեղմացնել։

2989· La moutarde lui monte au nez. —Կատակաբանութենէն, ծաղրանքէն կ'առնուի, հիմայ պիտի բարկանայ։

## MOUTON

2990· Les moutons de Panurge. —Բանիւրժի հօտին· այսպէս կը կոչեն այն անձինքն՝ որք նմանողութեամբ մը կը փութան գործ մը կատարելու։ La plupart des hommes ne raisonnent pas leurs actions; ils font ce qu'ils voient faire, en véritables *moutons de Panurge:* tant pis si c'est mal, tant mieux si c'est bien.

Ծանօթ· —Ակնարկութիւն այն վրէժին զոր Բանիւրժ՝ Ռապըլէի Բանդակրիւէլ անուն վիպասանութեան մէջ, լուծեց Տէնտընօլ անուն ոչխարի վաճառականէն։ Բանիւրժ այս վաճառականէն նաւու մէջ գտնուող գեղեցկագոյն ոչխարը գնելով ծովը նետեց, և բոլոր միւս ոչխարները անոր օրինակին հետեւելով՝ ամէնքն ալ ծովը նետուեցան։

2991· Revenons à nos moutons. —Գանք, դառնանք մեր խօսքին, մեր նիւթին։

### MOUTURE

2992· Tirer d'un sac deux moutures. —Բանէ մը կրկին շահ ընել, կրկնակի շահ ընել։

### MUET

2993· Carte muette. —Աշխարհացոյց տախտակ՝ ուր նշանակուած չ՚են երկիրներու և քաղաքներու անուններն ։

2994· N'être pas muette. —Լեզուն տեղը ըլլալ։

### MULE

2995· Ferrer la mule. —Մէկուն համար բան մը գնել և արժէքէն աւելի պահանջել։ (Կը գործածուի մասնաւորաբար ծառայից վրայ խօսելով և հոմանիշ է faire denser l'anse du panierի)։

2996· A vieille mule frein doré. —Կ՚ըսուի պառաւ կնոջ մը համար որ պճնիլ կը սիրէ ։

### MUR

2997· Mettre quelqu'un au pied du mur. —Մէկը նեղը ձգել· —Մէկը պապանձեցնել։

2998· Mettre quelqu'un entre quatre murs. —Բանտը դնել մէկը, ծակը խոթել։

2999· On tirerait plutôt de l'huile d'un mur. —Քարէն կաթ կթելը աւելի դիւրին է (ագահի մը համար կ՚ըսուի)։

3000· Les murs ont des oreilles. —Պատերն ականջ ունին, այսինքն՝ գաղտնի բանի մը վրայ մեծ զգուշութեամբ, ցած ձայնով պէտք է խօսիլ։

## MUSER

3001· Qui refuse, muse. —Շատ անգամ մարդ կը զղջայ իրեն եղած առաջարկը մերժած ըլլալուն։ (Կը գործածուի մասնաւորաբար հարսնցու աղջկանց համար՝ որ աղէկ բաղդեր կը մերժեն։)

## MYSTÈRE

3002· Faire mystère կամ un mystère de quelque chose. —Բան մը գաղտ պահել, չյայտնել։

---

# N

## NAGE, NAGER

3003· Être en nage, tout en nage. —Արիւն քրտինք մտած ըլլալ։ (Նոյն իմաստով կ'ըսուի նաեւ Suer sang et eau.)

3004· Nager en grande eau. —Հարուստ, ընչաւէտ ըլլալ։

3005· Nager entre deux eaux. —Ջուրին երեսը լողալ. —Երկու կողմանց հետ ճարտարութեամբ վարուիլ։

## NAPPE

3006· Trouver nappe mise. —Կ'ըսուի մէկու մը համար որ առանց դիւրակեաց վիճակ մ'ունենալու,

*կ'ամուսնանայ հարուստ մէկու մը հետ, և պատրաստ կը գտնէ ճոխ և կահաւորեալ տուն մը։*

3007· Mettre la nappe. —*Ճաշ, կոչունք տալ։* Ton oncle le mercier *mit* hier *la nappe* et nous régala d'une fête pastorale.

NASARDE

3008· Donner une nasarde *կամ* des nasardes à quelqu'un. —*Փոխաբերաբար գործածուած ատեն կը նշանակէ մէկը ծաղրել։*

3009· Homme à nasarde. —*Ծաղրելի, արհամարհելի մարդ։*

NASSE

3010· Être dans la nasse. —*Գէշ, դժուարին գործի մը մէջ մտած ըլլալ և անկէ օձիքը չ'կարենալ ազատել։*

NATURE

3011· Être dans l'état de pure nature. —*Մօրէ մերկ, բոլորովին մերկանդամ ըլլալ։*

NAUFRAGE

3012· Faire naufrage au port. —*Փոխաբերաբար գործածուելով կը նշանակէ՝ յաջողութեամբ յառաջ տարուած և աւարտելու մօտ ձեռնարկ մը մէկէն ի մէկ ի դերեւ ելնել։*

NAVETTE

3013· Faire la navette. —*Շարունակ, յաճախակի երթալ գալ, երթեւեկել։*

## NÉ

3014· Il est l'ennemi-né de la musique. — Ի բնէ երաժշտութիւն չ'սիրեր ։

## NEC

3015· Nec plus ultrà. —Ամենաբարձր , յետին աստիճան , վերջին սահման ։ Լատիներէն nec plus ultrà բառերն կը նշանակեն՝ ոչ աւելի հեռուն ։ Le *nec plus ultrà* de la vertu 'est de faire le bien sans que personne le sache. —Le Tartufe est le pas le plus étonnant et le plus hardi qu'ait jamais fait l'art de la comédie; cette pièce en est le *nec plus ultrà*. —Sa conduite est le *nec plus ultrà* de la fourberie.

Ծանօթ· —Ըստ աւանդելոյ , Հերակլէս՝ վերոյիշեալ բառերն արձանագրեց Կալփէոս և Աբիլա լերանց վերայ , զորս աշխարհի սահմաններն կարծեց , և զորս անջատեց Ովկէանոսն Միջերկրականին միացնելու համար ։

## NÉCESSAIRE

3016· Faire le nécessaire. —Կարեւոր անձի մը պէս ամէն բանի մէջ խառնուիլ ։ Les jeunes gens qui *font le nécessaire* sont souvent bien ridicules.

## NÉCESSITÉ

3017· Nécessité contraint la loi կամ nécessité n'a pas de loi. —Հարկը օրէնքը կը լուծէ ։

3018· Faire de nécessité vertu. —Անախորժ այլ անհրաժեշտ բան մը մտադիւր, ուզելով ընել։

3019· Aller à ses nécessités, faire ses nécessités. —Ճեմիշ (հարկաւոր) երթալ։

### NEIGE, NEIGER

3020· Blanc comme neige. — Փոխաբերաբար գործածուած ատեն կը նշանակէ՝ բոլորովին անմեղ։

3021· Je m'en soucie comme des neiges d'antan. —Բնաւ հոգս չէ, բնաւ վրան չեմ մտածեր։

3022· Il a bien neigé sur sa tête. —Մազերը ճերմկած են։

### NESCIO VOS

3023· Այս լատիներէն բառերն կը նշանակեն չեմ ճանչեր, և ընտանեկան ոճի մէջ կը գործածուին մերժում ցուցնելու համար։ Adressez-vous à d'autres, *nescio vos.*

Il me dit qu'il voulait vous parler un moment.
Je dis : *Nescio vos.*

### N E T

3024· Faire tapis net. —Խաղին մէջ դրուած բոլոր ստակը շահիլ։ (Կ'ըսուի նաև nettoyer le tapis)։

3025· Rentrer au logis les mains nettes. —Ունայնաձեռն, դատարկաձեռն տուն դառնալ։

3026· Je veux en avoir le cœur net. —Կ'ուզեմ վստահ, աներկբայ ըլլալ այդ մասին։

3027· Tout net. —Բոլորովին։ J'ai oublié *tout net* ce que vous m'avez recommandé.

## NEZ

3028· Ne pas voir plus loin que le bout de son nez. —Կարճատես ըլլալ. —Կանխատեսող չըլլալ։

3029· Tirer les vers du nez à quelqu'un. —Վարպետութեամբ մէկուն բերնէն գաղտնիք մը առնել։ Vous avez envie de me *tirer les vers du nez.*

3030· Fourrer son nez partout. —Իրեն չվերաբերող գործերուն խառնուիլ (քիթը ամէն տեղ խոթել)։

3031· Mener quelqu'un par le nez կամ par le bout du nez. —Մէկը իւր ուզածին պէս վարել, գործածել։

3032· Donner du nez en terre. —Երեսին վրայ, բերանն ի վար իյնալ. —Չ'յաջողիլ։

3033· Allonger le nez. —Տեսնելու, ուտելու, հոտոտելու համար մօտենալ (քիթը երկնցնել)։ —Երեսը կախել։ On lui sert ce qu'on a de meilleur, et il *allonge le nez.*

3034· Faire un pied de nez à quelqu'un. —Բթամատը քթին վրայ դնել և նոյն ձեռքին միւս մատները շարժել՝ ի նշան ծաղրանաց։

3035· Rire au nez de quelqu'un. —Մէկուն երեսին, քթին խնդալ։

3036· Mettre le nez dehors. —Տունէն դուրս ելնել։

3037· Fermer la porte au nez à quelqu'un. —Մէկուն երեսին դուռը գոցել։

3038· Votre nez branle! —Կը համապատասխանէ մեր ռամկական ասացուածին ուչունէր խօղօզ կա-րայ կոր՝ որ կ'ուղղուի սուտ խօսող մանկան մը, իմացնելու համար թէ իրեն աչքերն ստախօսութիւնը կը յայտնեն։

3039· Avoir bon nez, le nez fin. —Կանխատես ըլլալ։

3040· Saigner du nez. —Վախկոտութիւն ցոյց տալ. ձայնատրութիւն (défi) մը մերժել։

Ծանօթ. —Կ'ըսուի թէ վախկոտ մէկը՝ որ ի մենամարտ կոչուած էր՝ մենամարտելու ստիպողականութենէն ազատելու համար, այնպէս կեղծեց թէ մէկէն ի մէկ քթէն արիւն գալ սկսած էր. այս կը կարծուի ըլլալ վերի ասացուածին ծագումը։

3041· Donner sur le nez à quelqu'un. —Անաչեցուցիչ յանդիմանութիւն մ'ուղղել մէկուն։

3042· Nez à la Roxelane. —Պզտիկ և ծայրը վեր դարձած քիթ։

3043· Jamais grand nez n'a gâté beau visage. —Մեծ քթով գեղեցիկ դէմք չ'ըլլար։

Ծանօթ. —Ահա՛ բացատրութիւն սոյն անհեթեթ ասացուածին. մեծ քիթը միշտ կը տգեղացնէ դէմքն. արդ՝ երբէք մեծ քիթ մը չ'կրնար աւրել գեղեցիկ դէմք մը, քանի որ զայն կրող դէմքն արդէն իսկ տգեղ է այդպիսի քթի մը ներկայութեամբն։

## NID

3044. Un nid à rats. —Յոռի սենեակ։

3045. Petit à petit l'oiseau fait son nid (առակ). —Ժամանակը և համբերութիւնը ամէն բանի կը յաղթէ։

3046. Il croit avoir trouvé la pie au nid. —Հեգնութեամբ կ'ըսուի մէկու մը համար որ գեղեցիկ գիւտ մ'ըրած ըլլալ, դժուարին բանի մը յաղթած ըլլալ կը կարծէ, մինչդեռ իրմէ առաջ այդ բանն ընող եղած է։

3047. A chaque oiseau son nid paraît beau (առակ). —Ամէն մարդու իւր ունեցածը աղէկ կ'երեւայ։

## NIPPE

3048. Il en a eu, il en a tiré de bonnes nippes. —(Այդ գործէն կամ պաշտօնէն) շատ ստակ շահեցա՛ւ։

## NIQUE

3049. Faire la nique à quelqu'un, à quelque chose. —Ծաղրել, ծիծաղել։

3050· Les maux en ique font aux médecins la nique. —Ժողովրդական ասացուած որ կը նշանակէ թէ բժիշկները ique ով վերջաւորած հիւանդութենէ մը բռնուած հիւանդները չ'են կրնար բուժել, ինչպէս asthmatique (ծանրաշունչ), paralytique (անդամալոյծ), pulmonique (թոքացաւոտ), hydropique (ջրգող) եւն ։

## NOBLE

3051· Parties nobles. —Այսպէս կը կոչուի մարդուն սիրտը, լեարդը, ուղեղը, եւն ։

## NOCE

3052· Faire la noce. —Կերուխումի տալ ինքզինքը ։

3053· Ne pas être à la noce. —Կնճռոտ, վտանգաւոր կացութեան մը մէջ ըլլալ ։

3054· Ce sont de vraies noces de Camache. —Կ'ըսուի հանդիսի մը համար՝ ուր ամէն ինչ աներեւակայելի առատութեան մէջ է ։

Ծանօթ. —Ակնարկութիւն Քամաշի և գեղանւոյն Քիդէրիոսի հարսանեաց, պատմուած Տոն Քիշօդի վիպասանութեան երկրորդ մասի Ի. գլխոյն մէջ ։

## NOËL

3055· On chante tant Noël, qu'il vient (առակ). —Եթէ բանի մը շատ սպասես, վերջապէս այդ բանը կու գայ ։

### NOIR

3056· Broyer du noir. —Տխուր բաներ մտածել։

3057· Mettre du noir dans un plaisir. —Հաճոյքի մը, ուրախութեան մը մէջ տրտմութիւն ձգել։ L'oncle Bénélon *mettait du noir* dans la fête.

3058· Passer du blanc au noir. —Մէկ կարծիքէն, մէկ զգացումէն բոլորովին հակառակ կարծիքի մը, զգացման մը անցնիլ։

3059· C'est ma bête noire. —Այդ մարդը բնաւ չեմ սիրեր (այդ մարդը գրողս է)։

### NOM

3060· On ne saurait lui dire pis que son nom. —Եղեռնագործ, ապիրատ մ'է։

3061· Un nom de guerre. —Ծաղրանուն։

Ծանօթ. —ԺԵ. դարու մէկ վիպասանութեան մէջ, le Jouvencel, կը կարդանք թէ ծաղրանուններն խիստ սովորական էին Միջին դարու մէջ, մանաւանդ պատերազմիկներու մէջ։

3062· Il vaut mieux que son nom. —Իւր գէշ համբաւը անհիմն է։

### NOMMÉ

3063· A point nommé. —Ժամանակին, յարմար ատեն։ Vous venez *à point nommé* pour juger notre différend.

3064· A jour nommé. —Որոշեալ օրը։ Il se trouva au rendez-vous *à jour nommé.*

NON

3065· Non possumus. —*Այս լատիներէն բառերն կը գործածուին իբր գոյական և իբր նախադասութիւն։ Իբր գոյական կը նշանակեն մերժում.* opposer un *non possumus.* *Իբր պարբերութիւն կը նշանակեն չեմ կարող։* Au nom de Dieu, faites-moi cette bonté. —*Non possumus.*

NORMAND

3066· Réponse normande. —*Երկդիմի պատասխան.* —Répondre en normand. —*Ոչ այո ըսել ոչ՝ ոչ։*

3067· Réconciliation normande. —*Առ երես հաշտութիւն։*

3068· Il est adroit comme un prêtre normand. —*Շատ անճարպիկ է։*

NOTE

3069· Chanter toujours sur la même note. —*Միշտ մի և նոյն բանն ըսել։*

3070· Changer de note. —*Լեզուն, վարմունքը փոխել։* Leur ennemi *changea de note.*

3071· Notes tironiennes. —*Սղագրութիւն* (sténographie).

**Ծանօթ.** —*Սղագրութեան գիւտը կը վերագրուի Տիրոնի, որ Կիկերոնի ազատագիրն էր։*

## NOUVELLE

3072· Vous aurez de mes nouvelles. —Վրէժս պիտի լուծեմ ձեզմէ ։

3073· Je sais de vos nouvelles. —Ձեր գաղտնեաց տեղեակ եմ ։

3074· Envoyer aux nouvelles. —Հեծեալ զօրականներ լրտեսութեան ղրկել ։

3075· Point de nouvelles, bonnes nouvelles. —Մեզ հետ սերտ յարաբերութեան մէջ եղող հեռաւոր բարեկամի մը լռութիւնը՝ կրնայ աղէկ լուր մը նկատուիլ ։

## NOYAU

3076. Il faut casser le noyau pour avoir l'amande (առակ). —Նուշը առնել ուզողը՝ կուտը կոտրելու է, այսինքն բանէ մը շահ ընելու համար յոգնելու է ։

3077· Siége rembourré de noyau de pêche. —Ընտանեկան լեզուաւ կը նշանակէ խիստ կարծր աթոռ մը ։

## NUE

3078· Élever quelqu'un jusqu'aux nues. —Զափազանց գովել մէկը, մինչեւ երկինք բարձրացնել զայն (կ'ըսուի նաեւ jusqu'au troisième ciel) ։

3079· Tomber des nues —Յանկարծակի տեղ մը հասնիլ. —Արմանալ զարմանալ ։

3080· Faire sauter quelqu'un jusqu'aux nues. —Յանկարծ մէկը զայրացնել։

3081· Aller aux nues. —Մեծ յաջողութիւն գտնել։ Cette tragédie est *allée aux nues* կամ a été aux nues.

## NUMÉRO

3082· Le numéro cent. —Ճեմիշ։

Ծանօթ· —Այս խօսքին մէջ բառախաղ կայ. le numéro cent ըսուած է փոխանակ le numéro qui *sent* ի (կը հոտի), ըսելեայն mauvais.

3083· Numéro un. —Այս բառերն յաճախ խօսակցութեան մէջ կը գործածուին. առջին, առաջին կարգէն, ընտրելագոյն նշանակութեամբ։ Et, comme il avait reçu une éducation *numéro un*, եւն։

3084· Savoir le numéro de quelqu'un. —Մէկուն աստիճանը (արժէքը) գիտնալ, ճանչնալ։ (Գէշ մտքով կը գործածուի)։

---

## O

3085· C'est un O en chiffre. —Ոչինչ մարդ մ'է, փուճ արարած մ'է։ (Նոյն իմաստով կ'ըսուի նաեւ c'est un zéro)։

## OCCASION

3086· D'occasion. —Ձեռքէ, ձեռքէ ինկած։ J'ai acheté ce livre *d'occasion*, il m'aurait coûté plus cher chez le libraire.—Անշան։ Un héros *d'occasion*·

3087· Prendre l'occasion aux cheveux. —Նըպաստաւոր, աղէկ առիթը չ'փախցնել։ Certaine *occasion* qu'il faut *prendre* vite *aux cheveux*.

3088· L'occasion est chauve. —Պէտք չ'է առիթն փախցնել, որովհետեւ կրնայ ըլլալ որ մէկ մ'ալ ձեռք չ'ձգեմք զայն։

Ծանօթ. —Նախնիք առիթը կը ներկայացնէին ի ձեւ մի կնոջ որ գլխուն ետեւի կողմը մազ չ'ունէր. անգամ մ'որ նա անցնէր, այլ եւս կարելի չէր զայն բռնել։

## ŒIL

3089· Acheter, boire *à l'œil*. —Ապառիկ գնել, խմել։

3090· A vue d'œil. —Աչքի կշիռքով, չափով (կէօզ էօլչիւսիւ)։ Je n'ai jugé de cette distance qu'*à vue d'œil* et sans la mesurer. —Զգալի կերպով, ակն յանդիման։ Cette femme embellit *à vue d'œil.* Les communes s'enrichissent *à vue d'œil* à mesure qu'elles se dépouillent.

3091· Entre deux yeux, entre les deux yeux. —Յառեալ աչօք, աչքերը վրան տնկած։ Regardez-moi *entre les deux yeux* (աղէկ նայէ երեսս), et osez me répéter ce que vous m'avez dit.

3092· Entre quatre yeux (քաթր զիէօ). —Երկուքնին, երկուքնիս, առանձին եղած ատեններս։ Je lui dirai cela *entre quatre yeux*.

Ծանօթ. —Անթր քաթր զիէօ արտասանութիւնը

զարմանալի կամ անհեթեթ չ'թուի․ հին ատենը quatre ին ծայրը s մը կը դնէին, վկայ Մառլպօռուի երգը․ Je l'ai vu porter en terre par quatres officiers.

3093· Par-dessus les yeux. —Յանչափս։

3094· Non plus կամ pas plus que dans mon œil. —Ոչ բնաւ, ամենեւին։

3095· N'avoir des yeux que pour . . . —Միայն . . . սիրել կամ մեծարել։

3096· Coûter les yeux de la tête. —Շատ սուղի նստիլ։ Cette maison me *coûte les yeux de la tête.* —Cela me *coûte les yeux de la tête,* mais je sème abondamment pour mieux récolter.

3097· Faire de l'œil à une personne. —Աչք ընել։

3098· Faire les gros yeux à quelqu'un. —Խոշոր մոլոր նայիլ։

3099· Avoir le mauvais œil. —Աչքը գէշ ըլլալ․ (Նազար վէրմէ)։

3100· Pour les beaux yeux de quelqu'un. —Մէկուն հաճելի ըլլալու համար․ —Ձրիաբար։ Croit-il que je le logerai chez moi pour *ses beaux yeux?*

3101· Ce vin a un œil louche. —Այս գինին պղտոր է։

3102· Se battre l'œil de . . . —Ծաղրել, բանի տեղ չ'դնել։ Mordié! je *me bats l'œil* du Mercure et de toi.

3103· Cela vous crève les yeux. —Աչացդ առջեւն է, ինչպէս չես տեսներ։

3104· J'ai des yeux! —Տեսակ մը ձայնարկութիւն որ կը նշանակէ՝ մի՛ կարծեր որ կը խաբուիմ, անցածը դարձածը կը հասկնամ (ինչպէս խիստ ռամկօրէն կ'ըսեն ես էշ չեմ)։

3105· Les maux d'yeux ne se guérissent qu'avec le coude. —Հիւանդ աչք մը բուժելու լաւագոյն միջոցը՝ անոր ըստ կարի քիչ դպչիլն է։

3106· Dessiller les yeux à quelqu'un. —Մէկուն աչքը բանալ, իւր խաբուած ըլլալը հասկցնել, ճշմարտութիւնը ցուցնել իրեն։

Hélas! que ferait-il si quelque audacieux
Allait pour son malheur lui *dessiller les yeux*.

## ŒUF

3107· A l'aventure on met ses œufs (էօ) couver (առակ)· —Շատ պարագայներու մարդ ըստ բաղդին կը գործէ, առանց կանխապէս վստահ ըլլալու յառաջ գալիք հետեւութեանց վրայ։

3108. Il tondrait sur un œuf. —Վերջին ծայր ագահ է։

3109· Donner un œuf pour avoir un bœuf. —Պզտիկ նուէր մ'ընել մեծ նուէր մ'առնելու միտօք։

3110· Ne dire ni œuf ni bœuf. —Բառ մը չը պատասխանել։

3111· Il ne faut pas mettre tous ses œufs

dans le même panier.—*Անխոհեմութիւն է բոլոր ունեցածը միեւնոյն ձեռնարկին յատկացնել, դառ-կեցնել:*

## ŒUVRE

3112· Hors d'œuvre. —*Յաւելուած, ետքէն աւելցուած, չինուած եւն:* Ce morceau d'architecture est un *hors d'œuvre.* —Cette réponse est un *hors d'œuvre.* —*Թանին հետ հրամցուած խորտիկք, ինչպէս կարագ, անձրուկ* (anchois, *անչու պալըղը*), *թուզ, եւն:* . . . Le linge damassé qui faisait l'orgueil de la tante Roubert, les vieux cristaux, la faïence coloriée, l'argenterie de forme antique ont été élégamment disposés; Renée y a ajouté toutes les amusantes fantaisies des *hors-d'œuvre,* depuis le beurre en coquilles jusqu'aux radis en bouquet.

3113· Maître des basses œuvres. —*Կոյանոց մաքրող:*

3114· Maître *կամ* exécuteur des hautes œuvres. —*Դահիճ:*

## OIE

3115· Les oies de frère Philippe. —*Կանայք, ընդհանուր առմամբ:*

Ծանօթ. —*Այս ասացուածն վերնագիրն է Լաֆոնդէնի պատմութեանց միոյն, յորում հայր մը (եղբայր Փիլիպոս), անտառը քաշուած՝ իւր որդին կը կրթէ, մեծապէս զգուշանալով որ կնոջ վրայ բառ մը չը փախցնէ բերնէն անոր ներկայութեանը:* Օր

*մը, հայր ու որդի միասին քաղաք գացած ըլլալով, տղայն առաջին անգամ ըլլալով կին կը տեսնէ: — Ի՞նչ են այս գեղեցիկ թռչունները, կը հարցնէ հօրը. — Սագ են, կը պատասխանէ հայրն: — Այն ատեն որդին աքանչացած կ'ըսէ՝*

Menons-en une en notre bois,
J'aurai soin de la faire paître.

3116· Les oisons veulent mener les oies paître. *—Երիտասարդաց բնութիւնն է իրենցմէ մեծերուն, իրենցմէ բանգէտներուն խորհուրդ տալ:*

3117· La patte d'oie. *—Տարիքոտ մարդոց աչաց անկիւնը գտնուող խորշումները:* Il n'est plus jeune, on lui voit déjà la *patte d'oie.* —La *patte d'oie* s'était imprimée sur ses tempes.

OIGNON

3118· En rang d'oignon (ռմկ). *—Իրարու քով կարգաւ, մէկ գծի վրայ:*

3119· Il y a de l'oignon. *—Այս գործին մէջ արգելք մը, գէշ բան մը կայ:*

OISEAU

3120· L'oiseau de saint Luc. *—Եզն:* Léger comme *l'oiseau de saint Luc,* այսինքն ծանրաշարժին, դանդաղ:

**Ծանօթ.** *—Սուրբ Ղուկաս ներկայացուած է եզով մը, իբր խորհրդապատկեր:*

3121· A vue d'oiseau. —Վերէն նայելով։ Il a dessiné cette ville *à vue d'oiseau.*

3122· A vol d'oiseau. —Ուղիղ գծով։ De Paris à Rouen, il n'y a que vingt lieues *à vol d'oiseau.*

3123· Un oiseau de bon, de mauvais augure. —Մէկը որոյ գալուստը բարենշան է, մէկը որոյ գալուստը չարագուշակ է։

**Ծանօթ.** —Յայտնի է թէ նախնիք պատերազմի չ'սկսած կամ որ և է գործի մը չ'ձեռնարկած՝ թռչնոց թռիչը կը քննէին։

3124· Les oiseaux ont déniché. —Թռչունները բոյնէն հեռացեր են։ (Կ'ըսուի երբ փնտռուած մարդերնիս չ'եմք գտներ։)

3125· Être battu de l'oiseau. —Յաջորդական ձախողանքէ, անյաջողութիւններէ վհատած ըլլալ։

## OMBRE

3126· Mettre un homme à l'ombre. —Բանտ դնել (ծակը խոթել)։

3127· Faire ombre à quelqu'un. —Մէկուն արժանիքը նսեմացնել։

3128· Sous l'ombre de, sous ombre de . . . —Պատճառանօք. կերպարանօք։ *Sous ombre de* dévotion.

3129· Vous lui feriez sauter son ombre. — Իւր վրայ այնչափ ազդեցութիւն, իշխանութիւն ունիս որ ուզածդ ընել կրնաս տալ իրեն։

3130· C'est une ombre au tableau. —Կ'ըսուի աղէկ գործի մը մէջ գտնուող աննշան թերութեան մը համար։

3131· Courir après une ombre. —Սնոտի յոյսերու ետեւէ ըլլալ։

### ONGLE

3132· A l'ongle on connaît le lion (առակ)· — Առիւծը եղունգէն կը ճանչցուի, այսինքն՝ ամենափոքր գործն, ամենափոքր խօսքն բաւական են ճանչցնելու և գնահատել տալու մտացի մարդն։

3133· Rogner les ongles à quelqu'un. —Մէկուն իշխանութիւնը, ազդեցութիւնը նուազեցնել։

3134· Il a eu sur les ongles. —Ըստ արժանւոյն յանդիմանուեցաւ։

3135· Avoir de l'esprit jusqu'au bout des ongles. —Շատ հանճարեղ ըլլալ։

3136· Avoir des ongles en deuil. —Եղունգները աղտեղի ըլլալ։

### ONGUENT

3137· De l'onguent miton-mitaine. —Դեղ որ ոչ օգուտ կ'ընէ և ոչ վնաս, բան մը որ ոչ շահաբեր է և ոչ վնասաբեր։

Mais tout ça n'est que de l'onguent *miton-mitaine*.

## OPÉRA

3138· C'est un opéra. —Դիւրին բան չ'է ։

## OR

3139· Tout ce qui reluit n'est pas or (տռակ)· —Ամէն ինչ որ կը փայլի՝ չ'է ոսկի ; այսինքն՝ արտաքին երեւոյթէն պէտք չ'է խաբուիլ ։

3140· Rouler sur l'or et sur l'argent. —Ոսկւոյ և արծաթի մէջ լողալ, շատ հարստութիւն ունենալ ։

3141· Dire, parler d'or. —Պերճաբան , համոզակեր լեզուաւ ճառել ։ Ma foi, mon cher Eraste, vous *parlez d'or*.

3142· Acheter, vendre au poids de l'or. — Ոսկւոյ ծանրութեամբ՝ այսինքն շատ սուղ գնել, ծախել ։

3143· Il a de l'or de Toulouse. —Կ'ըսուի մէկու մը համար որ շահ մ'ունեցած է , և որմէ վրէժ լուծել կ'սպառնան ։

## OREILLE

3144· Je suis tout oreilles. —Ականջներս ձեզի են բոլորովին ։

3145· Prêter l'oreille. —Ունկն դնել ։

3146· Cela lui entre par une oreille et lui sort par l'autre. —Մէկ ականջէն կը մտնէ միւսէն կ'ելնէ ։

3147· Avoir les oreilles battues, rebattues d'une chose. —*Բան մը շատ լսելէն տաղտկացած ըլլալ։*

3148· Étourdir, rompre los oreilles à quelqu'un. —*Շաղակրատութեամբ մէկը տաղտկացնել։*

3149· Être dur d'oreille. —*Ականջը ծանր ըլլալ։*

3150· Faire la sourdé oreille. —*Սուտ խուլ ըլլալ։*

3151· Se faire tirer l'oreille. —*Ինքզինքը ծանրէն քաշել։*

3152· Échauffer les oreilles à quelqu'un. —*Խօսքով զայրացնել մէկը։*

3153· Par-dessus les oreilles. —*Կարողութենէն աւելի, յանչափս։* Il est endetté *par-dessus les oreilles.*

3154· Grandes oreilles, courte langue. —*Քիչ խօսէ, շատ մտիկ ըրէ։*

3155· Mettre à quelqu'un la puce à l'oreille. —*Գործոյ մը յաջողելուն վրայ անհանգիստ ընել մէկը · մէկու մը ուշադրութիւնը բանի մը վրայ հրաւիրել։*

## ORGE

3156· Faire ses orges. —*Խարդախ միջոցներով հարստանալ։* Il me paraît que le neveu de Melchior *faisait* là *ses orges* à merveille.

3157· Être entre l'orge et l'avoine. —*Ընտրութիւնը իւր ձեռքն ըլլալ և թերեւս որու նախապատուութիւն տալը չ'գիտնալ։* Le voilà donc *entre l'orge et l'avoine.*

## ORGUEIL

3158· Il n'est orgueil que de pauvre enrichi (առակ)· —*Ոչ ոք այնքան կը հպարտանայ քան չը տես մը որ կը հարստանայ ։*

3159· Orgueil n'a pas bon œil (առակ)· —*Ամէն մարդ հպարտին աչաց փոքր կ'երեւի, բաց ի ինքզինքէն ։*

## ORME

3160· Attendez-moi sous l'orme. —*Կնձնւոյն տակ սպասէ ինձ ։ (Կ'ըսուի երբ մէկը ժամադրութիւն կ'ընէ մէկուն առանց ուզելու երթալ ժամադրեալ տեղը, կամ բան մը կը խոստանայ՝ առանց իւր խոստումը կատարելու կամք ունենալու ։)*

## ORTHOGRAPHE

3161· Faire une faute d'orthographe. —*Ամուսնական դաշանց՝ հաւատարմութեան դրժել։*

3162· Orthographe de Voltaire. —*Վոլդէռեան ուղղագրութիւն, այն է՝ խել մը գոյականներու և բայերուն անկատարին ու թէականին մէջ* ai *ն* oi *ի փոխել։*

Ծանօթ. —Այս ուղղագրութիւնը Վոլդէր չ'հնարեց, որովհետեւ ԺԶ. դարուն մէջ ալ կար այն. բայց Վոլդէր տարածեց զայն։

## OS

3163· Laisser ses os quelque part. —Տեղ մը մեռնիլ։

3164· Ce sont deux chiens pour un os. —Կ'ըսուի երկու որկրամոլներու համար որք մէկ սկաւառակէ կ'ուտեն։

3165· Il ne fera pas de vieux os. —Շատ չը տեւեր կը մեռնի։ (Կ'ըսուի մէկու մը համար որ օր ըստ օրէ կը հիւծի)։

3166· N'avoir que les os et la peau. —Կաշին ոսկորը միացած ըլլալ, խիստ նիհար ըլլալ։

Un loup *n'avait que les os et la peau*
Tant les chiens faisaient bonne garde.

3167· Donner un os à ronger à quelqu'un. —Մէկուն բերանը ոսկոր մը նետել, այսինքն՝ պզտիկ շնորհ մը, աննշան պաշտօն մը շնորհել մէկուն՝ անոր պատճառած տաղտուկէն ազատելու համար։

## OURS

3168· C'est un ours mal léché. —Կոպիտ մէկն է։

3169· Lécher l'ours. —Նիւթի մը վրայ ուղղակի խօսք բանալու վարանիլ, դարձուածներով

*խօսիլ։ (Նոյն իմաստով կը գործածուի նաեւ* tourner autour du pot.)

## OUVERT

3170· A livre ouvert. —*Յանպատրաստից (կարդալ, թարգմանել, երգել)։*

3171· A force ouverte. —*Բռնութեամբ։*

---

## P

3172· Le Pactole roule chez vous. —*Շատ հարուստ էք։*

**Ծանօթ.** —*Պակտոլ, գետ Լիւդիոյ, ատենօք տեսակ մը ոսկեղէն աւազ կը թաւալեցնէր որ Կրեսոս թագաւորին հրաշալի հարստութիւնը կը կազմէր։*

## PAGE

3173· Hors de page. —*Հպատակութենէ ազատ, ինքնագլուխ։*

## PAILLE

3174· Rompre la paille avec .quelqu'un. — *Մէկուն հետ յարաբերութիւն, դաշինք խզել, լուծել։*

**Ծանօթ.** —*Կեղտացւոց և Հռովմայեցւոց մէջ սովորութիւն էր հող մը կամ տուն մը առած ատեն յարդի շիւղ մը տալ, և հակառակ պարագային մէջ քանի մը յարդի շիւղ կոտրել։ Յաճախ համառօտ կերպով կ'ըսուի* rompre avec quelqu'un.

### PAIN

3175· Emprunter un pain sur la fournée. — Այս ասացուածն կը գործածուի մէկու մը համար՝ որ դեռ չամուսնացած, մայր կ'ընէ այն աղջիկն՝ որու հետ պիտի ամուսնանայ։

3176· Avoir du pain de cuit. —Ապրելու չափ ինչք ժողված ըլլալ։ (Նոյն իմաստով կը գործածուի նաեւ avoir du pain sur la planche.)

3177· Faire passer à quelqu'un le goût du pain. —Մէկը սպաննել։

3178· C'est pain bénit. —Արժանի էր այդ պատժոյն (օխ ըլլայ)։

### PAIR

3179· Traiter quelqu'un de pair à compagnon. —Իբր ընկեր, խիստ ընտանեբար վարուիլ մէկու մը հետ։

3180· Aller de pair avec quelqu'un. —Զոյգ, հաւասար քալել մէկուն հետ։

3181· Entendre le pair. —Ճարտար ըլլալ, գործի մը մէջ եփած ըլլալ։

3182· Être au pair. —Ուշ մնացած չըլլալ։ (Կ'ըսուի օրական գործի մը համար)։ J'étais en arrière dans mon travail, maintenant je *suis au pair*, je *me suis mis au pair* (Հիմա լմնցուցի, ժամանակը չանցուցի)։ — Être au pair (dans une maison de

Ծանօթ. — Բառ առ բառ կը նշանակէն Նոտա, եւ. բայց որովհետեւ այս բառերով կ'սկսի Վիրգիլիոսի մէկ ոտանաւորը յորում Պոսիդոն զայրացեալ՝ կ'սպառնայ հողմոց դէմ, որք առանց իրմէ հրաման առած ըլլալու, փոթորիկ մը յարուցած են, վերի իմաստով կը գործածուին։

---

# R

## RAGE

3579· Faire rage. — Շատ չարիք գործել· Les soldats ont été chez lui, et ils y ont *fait rage.*

3580· Dire rage de quelqu'un. — Մէկուն վրայ ամէն կերպով չարախօսել·

## RAISON

3581· Comme de raison. — Որպէս պատշաճ է։ . . . Il y avait là un vieux barbon qui ne voulait point lâcher la jeune fille, qui se disait son grand père, qui pleurait, qui hurlait, et qui ne savait à qui faire ses supplications; on allait, *comme de raison,* le tuer, et voilà Mohély qui se jette entre eux et les soldats . . .

3582· Plus que de raison. — Զափէն աւելի, պատշաճից սահմանէն դուրս։ Il a bu *plus que de raison.*

3583· A raison de. — Համեմատութեամբ։ On paya cet ouvrier *à raison de* l'ouvrage qu'il avait fait. — A raison de tant pour cent. —Սաչափ առ հարիւր։

3584· Pour raison de quoi. — Այս պատճառաւ, վասն այսորիկ։

3585· Entendre raison. —Խօսք հասկնալ։ Vous avez beau essayer de le persuader; vous y perdez votre peine; il n'*entend* pas *raison*.

3586· Mettre quelqu'un à la raison. —Մէկուն խելքը գլուխը բերել. —Նուաճել։ Il *mit* ces furieux *à la raison*.

3587· Faire raison. —Մեկնել։

3588· Faire raison à quelqu'un. —Մէկուն կենացը խմել, երբ նա արդէն մեր կենացը խմած է։

3589· Rendre raison à quelqu'un. — Մէկուն հետ մենամարտիլ։

RAME

3590· Être, tirer à la rame. —Տաժանիլ, տըքնիլ, յոգնատաժան պաշտօն մը ունենալ։

3591· Mettre un livre à la rame. —Չը ծախուած գրքի մը թերթերը իբր պատատ գործածել։ Ce livre n'est bon qu'à *mettre à la rame*.

RANCART

3592· Mettre quelque chose au rancart. —

բան մը մէկ կողմ նետել՝ երբ անգործածելի դար- ձած է, կամ չեմք գործածեր զայն ։

### RANG

3593· Être, se mettre sur les rangs. —*Բանի մը հետամուտ ըլլալ ։*

### RAT

3594· Avoir des rats dans la tête. —*Խեղկա- տակ, զուարճաբան, բախուկ ըլլալ ։*

3595· Payer en chats et en rats. —*Կ'ըսուի պարտատէրի մը համար՝ որ ստակ չունի, և դէշ կերպով կը հատուցանէ ։*

3596· Prendre un rat. —*Չ'բորբոքիլ, կրակ չ'առնել (հրացանի վրայ խօսելով)·* —*Նպատակին մէջ չ'յաջողիլ ։*

### RATELIER

3597· Manger à plus d'un râtelier. —*Այլ և այլ տեղերէ շահեր ընել ։*

### RATISSER

3598· En ratisser à quelqu'un. —*Մէկուն խըն- դիրը մերժել ։*

Croyez-vous que dans la gloire
Fleury vous rétablira ?
L'on vous en ratisse, tisse, tisse.
L'on vous *en ratissera.*

## RÉCHAUFFÉ

3599· C'est du réchauffé. —Այդ գրքին մէջ նոր բան մը չ'կայ։

## RÉGALADE

3600· Boire à la régalade. —Առանց շրթունքը ամանին դպցնելու խմել։

## REIN

3601· Avoir les reins forts. —Ընչաւէտ, հարուստ (կռնակը հաստ) ըլլալ։

## RELIQUES

3602· N'avoir pas foi aux reliques de quelqu'un. —Մէկուն ըրած խոստմանց գործադրութեան հաւատ չ'ընծայել։

## REMÈDE

3603· Un remède de bonne femme. —Ժողովրդական և պարզ դեղ՝ զոր բժշկութիւնը չ'յանձնարարեր, և որ սակայն շատ աւելի օգտակար կ'ըլլայ յաճախ։

3604· Un remède de cheval. —Կարի ազդու դեղ։

## REMISE

3605· Être sous la remise. —Պաշտօնէն արձակուած ըլլալ. —Հիւանդութեան կամ ծերութեան պատճառաւ գործ մ'ընելու անկարող ըլլալ։

### REMONTER

3606· Remonter sur sa bête. —*Կորուսած պաշտօնը նորէն ձեռք ձգել։*

### REMORDRE

3607· Il n’y veut plus remordre. —*Նորէն ձեռք զարնել, սկսիլ չ'ուզեր (այն ինչ գործին)․ (ուսման) նորէն պարապիլ չուզեր։*

### REMUER

3608· Remuer l’argent à la pelle. — *Ստակը թիով խառնել․ այսինքն շատ հարուստ ըլլալ։*

3609· Remuer ciel et terre. — *Երկինք երկիր իրար անցնել։*

### RENARD

3610· Se confesser au renard. — *Գործոյ մը գաղտնիքը տալ մէկու մը՝ որ շահ ունի նորա յաջողութեան արգելք ըլլալէ։*

3611· Prendre martre pour renard. — *Սխալմամբ բան մը ուրիշ բան մը կարծել։*

3612· Une toux de renard. — *Մահառիթ հազ։*

3613· Écorcher le renard. —*Շատ խմած ըլլալուն համար փսխել։*

3614· Un bon renard ne mange pas les poule de son voisin (առակ)· — *Խոհեմ մարդը իւր բնակութեան մօտերը պարսաւելի գործ չ'ըներ։*

## RENDRE

3615· Rendre des points à quelqu'un. —Մէկէ մը աւելի զօրաւոր ըլլալ կամ այնպէս կարծել ինքզինքը ։

3616· Dieu vous le rende. —Աստուած հատուցանէ ։ (Ալլահ ղէրէնէ ղին վէրսին) ։

## RENOMMÉE

3617· Bonne renommée vaut mieux que ceinture dorée (առակ)· —Բարի համբաւն հարստութենէն լաւագոյն է ։

Ծանօթ. — Լուդովիկոս Ը.ի կինն՝ Բլանշ Թագուհին, եկեղեցին շքեղապէս հագուած ցոփակեաց աղջկան մը ողջոյն տուած ըլլալով, յապագային նմանօրինակ սխալման մը մէջ վերստին չիյնալու համար, հրաման հանել տուաւ թէ պոռնիկներուն արգիլուած էր ոսկեճամուկ գօտի կրել ։ Այս հրամանը աղէկ չը պահուեցաւ, և պարկեշտ կանայք մխիթարուելու համար վերի առակն չինեցին ։

## REPIC

3618· Faire quelqu'un repic. —Պապանձեցնել ։

## RESTE

3619· De reste. —Աւել աւելօք, պէտք եղածէն աւելի ։ Il a de l'argent *de reste.*

3620· Donner son reste à quelqu'un. — Մէկը ծեծել, յանդիմանել, խրատել. — Մէկուն յաղթել. ըմբերանել:

### RETOUR, RETOURNER

3621· Être sur le retour. —Ծերանալու, տկարանալու սկսիլ:

3622· Le retour d'âge. — Կանանց այն ժամանակամիջոցը յորում ծննդաբերութեան կարողութիւնը կը կորսնցնեն:

3623· Vous ne savez pas de quoi il retourne. —Չ'էք գիտեր ինչեր կ'անցնին:

3624· Retourner quelqu'un de tous sens. — Ամէն ջանք ընել մէկու մը բերնէն գաղտնիք մ'առնելու համար:

### RETRANCHEMENT

3625· Forcer quelqu'un dans ses derniers retranchements. — Մէկը պապանձեցնել, գործելու, պատասխանելու ամէն միջոց բառնալ մէկէն:

### REVENDRE

3626· Avoir d'une chose à revendre. — Բանէ մը առատաբար ունենալ:

### REVIRER

3627· Revirer de bord. —Միտքը փոխել:

## RIEN

3628· Il n'y a rien que ... —Քիչ մը առաջ ... շատ ժամանակ չ'ըներ ... *Il n'y a rien qu*'il était ici.

3629· Rien de rien. —Չ'արժեր, խօսքը չ'ըլլար։ Je vous remercie du coup de main que vous m'avez donné. —*Rien de rien.*

3630· Comme si de rien n'était. —Իբր թէ ընաւ բան մը չ'էր եղած, չ'էր պատահած։

## RIME, RIMER

3631· Il n'y a ni rime ni raison dans tout ce qu'il dit. —Ըսածներէն բան չ'հասկցուիր, անհանճարաբար կը խօսի։

3632· Rimer en Dieu. —Հայհոյել, երդնուլ։ C'est là qu'on *rime* richement *en Dieu.*

## RIRE

3633· Tel qui rit vendredi, dimanche pleurera (առակ)․ —Այսօր խնդացողը վաղը կուլայ․ այսինքն՝ այս աշխարհի հաճոյքներ խիստ յողդողդ են։

3634· Rira bien qui rira le dernier. —Այս խօսքը կ'ուղղուի մէկու մը հասկցնելու համար անոր թէ իւր յաջողութիւնն և տեւական չ'պիտի լինի։

3635· Rire comme un bossu. —Շատ ծիծաղիլ։

## RISQUE

3636· A tout risque. —Ինչ կ'ըլլայ ըլլայ, յաջողի թէ ոչ։

## RISUM

3637· Risum teneatis. —Մի՛ խնդար, եթէ կըրնաս, կարելի՞ բան է որ մարդ ծիծաղը բռնէ ։ Supposez une tirade du Misanthrope dans la bouche d'un électeur ou d'un garde national, *risum teneatis.* —Que dites-vous de ce que je viens de vous raconter ? N'est-ce pas édifiant ? *Risum teneatis.*

## RIVIÈRE

3638· Les petits ruisseaux font les grandes rivières. —Խնայողութիւն ընելով ընելով՝ մարդ վերջապէս կը յաջողի հարստութիւն ժողվելու ։

3639· L'eau va toujours à la rivière (առակ)· —Հարստութիւնը հարուստներուն կ'երթայ ։

## ROBERT MACAIRE

3640· C'est un vrai Robert Macaire. —Ցանդուգն և անամօթ խարդախ մ'է ։

## ROBIN

3641· Être ensemble comme Robin et Marion. —Գաղափարակից ըլլալ ։

3642· Il souvient toujours à Robin de ses flûtes. —Մարդ իր նախկին սովորութիւններն դիւրաւ չը կրնար կորսնցնել ։

### ROCHE, ROCHER

3643· Trouver sa roche Tarpéienne. — Ժողովրդականութիւնը կորսնցնել։

3644· De la vieille roche. —Հին։ Noblesse de la vieille roche. —Amis de la vieille roche. —Ton père est *de la vieille roche,* dit un des jeunes gens.

3645· Rouler le rocher de Sisyphe. — Յոգնեցուցիչ և միօրինակ բան մ'ընելու դատապարտուած ըլլալ։

### ROGER BONTEMPS

3646· C'est un Roger Bontemps. — Զուարճասէր է, հաճոյից բարեկամ է։

### ROI

3647· Où il n'y a rien le roi perd ses droits. —Ստակ չունեցողէն չը պահանջուիր որ պարտքը վճարէ։ (Կ'ըսուի նաև On ne peut pas peigner un diable qui n'a pas de cheveux)։

3648· Travailler pour le roi de Prusse.—Ապարդիւն կերպով աշխատիլ։

3649· La cour du roi Pétaud. —Այսպէս կ'անուանեն խառնաշփոթ ժողով մը ուր ամէն ոք տէր, պետ ըլլալ կ'ուզէ։

3650· Le roi dit : Nous voulons. — Այս խօսքերը կ'ուղղուին տղու մը, իր յաւակնութիւնները, պահանջումներն ցածուցանելու համար։

3651· Faire comme le roi devant Pavie. — Բոլոր ունեցած ստակը խարճել։

ROSEAU

3652· S'appuyer sur un roseau. —Տկար մէկու մը վրայ ապաւինիլ։

ROUE

3653· Faire la roue. — Սիգալ։ Cet homme *fait la roue.*

3654· Être sur la roue. — Մեծ նեղութեան, տագնապի մէջ ըլլալ։

3655· Les plus mauvaises roues font le plus de bruit. —Ընդհանրապէս շատ պոռացող պոռչտող-ները՝ ամենէն շատ գործ տեսնողները չ'են։

3656· Pousser à la roue. —Ուրիշին գաղափարը յաջողցնելու համար ճիգ թափել։

3657· Cela sert comme une cinquième roue à un carrosse. —Բանի մը չը ծառայեր։

ROUSSIN

3658· Un roussin d'Arcadie. — Էշ։

ROYAUME

3659· Passer dans le royaume des taupes. — Զուարճաբանութեամբ կը գործածուի մեռնիլ նշանա-կութեամբ։

### RUBRIQUE

3660· Savoir toutes les rubriques d'un métier. —Արհեստի մը բոլոր մանրամասնութեանց տեղեակ ըլլալ։

3661· Sous la rubrique de . . . —Լրագրութեան մէջ կը գործածուի ուր rubrique կը նշանակէ լրոյ մը աղբիւրն։ Այսպէս կ'ըսեն On nous écrit *sous la rubrique de* Berlin, եւ։

---

## S

### SABLE

3662· Avoir du sable dans les yeux. —Աչքերը քունէն ծանրացած ըլլալ։

3663· Le marchand de sable. —Երեւակայական էակ որով կ'սպառնան մանկիկներն որպէս զի աչքերնին գոցեն և քնանան։ Le *marchand de sable* qui passe tous les soirs en saupoudrant les paupières des hommes.

### SABRER

3664· Sabrer une affaire. — Գործ մը անփութութեամբ, անճապարանօք կատարել։

3665· Un sac à vin. —Գինով, գինւոյ սպունգ։

3666· Avoir le sac. —Հարուստ ըլլալ։

3667· Prendre d'un sac deux moutures. —Մէկ

գործէն կրկին շահ ընել, մէկ բանին համար երկու անգամ սատակ առնել։

3668· Mettre quelqu'un au sac.—Պապանձեցնել։

3669· Être pris la main dans le sac. — Գողութիւն ըրած պահուն, յանցանքը գործած պահուն բռնուիլ։

3670· Autant pèche celui qui tient le sac, que celui qui met dedans (առակ). — Գողն և գողակիցն հաւասարապէս պատժելի են։

3671· Vider son sac. — Միտքը եղածը ամբողջովին ըսել։

3672· Remplir son sac. — Կուշտ ու կուռ ուտել, պարկը լեցնել։

3673· C'est une affaire dans le sac. — Գործը յաջող վիճակի մէջ է։

**SAIGNER**

3674· Saigner du nez. — Փոխաբերաբար գործածուած ատեն կը նշանակէ վախկոտիլ (փորին ցաւը բռնել)։ Il fit d'abord le fanfaron, puis il *saigna du nez.*

**SAINT**

3675· C'est un pauvre saint. —Առանց արժանեաց ու վարկի մարդ մ'է։

3676· Chacun prêche pour son saint (առակ). Ամէն մարդ իրեն և իրեններուն ի նպաստ կը խօսի։

3677· Monté comme un saint George. —Աղէկ ձի հեծած ։

3678· Le saint du jour. —Այսպէս կ'անուանի մէկը որ քիչ ժամանակէ ի վեր համարում ստացած է, և որոյ վայելած պատիւը չ'ենթադրուիր որ երկարատեւ ըլլայ ։

3679· C'est un saint qui ne guérit de rien. —Տկար և երկչոտ մէկն է ։

3680· Un saint qu'on ne chôme pas. —Պաշտօնանկ, երեսէ ինկած մէկը ։

3681· Se recommander à tous les saints du paradis. —Ամէն մարդու պաշտպանութիւնը հայցել ։

3682· Ne savoir à quel saint se vouer. —Նեղութենէ մ'ազատելու համար ի՛նչ միջոց ձեռք առնելը, որո՛ւ դիմելը չ'գիտնալ ։

3683· Perdre tout son Saint Crépin. —Կ'ըսուի ընտանեբար մէկու մը համար որ բոլոր ունեցածը կը կորսնցնէ ։

3684· A tel saint, telle offrande (տուրք). —Մարդիկ կը յարգուին՝ ըստ իւրեանց արժանեաց ։

3685· Manger les saints.—Միշտ եկեղեցի երթալ ։

3686· Hardi comme un Saint Pierre. —Յանդուգն ուրացող ։

3687· Un Saint Jean-Bouche-d'Or. —Այսպէս կ'անուանեն զայն՝ որ առանց մտածելու, առանց հաշուելու և նոյն իսկ առանց ընկերական պատշա—

ճութիւններն ի նկատի առնելու՝ բերնին եկածը, մտքէն անցածը կ'ըսէ։

## SANG

3688· Faire du *կամ* de mauvais sang. —*Սիրտը նեղանալ։*

3689· Bon sang ne peut jamais mentir.—*Պարկեշտ մէկու մը որդին սովորաբար իւր հօր բնութիւնն կը կրէ։*

## SANGRADO

3690· Un docteur Sangrado. — *Անուս բժիշկ։*

## SAPIN

3691· Sentir le sapin. —*Մեռնելու մօտ ըլլալ։*

## SAS

3692· Passer au gros sas. —*Փոխաբերաբար կը նշանակէ հարեւանցի, վեր ի վերոյ քննել։*

## SAUCE

3693· On ne sait à quelle sauce le mettre. —*Չ'եմ գիտեր թէ ի'նչ բանի օգտակար կրնայ ըլլալ, ի'նչ բան ձեռքէն կուգայ։*

3694· Faire la sauce à quelqu'un. —*Մէկը խստիւ յանդիմանել։*

3695· Il n'est sauce que d'appétit (առած). — ***Ախորժակն լաւագոյն համեմանքն է, ախորժակ ունեցողին ամէն կերակուր համով կու գայ։***

S A U F

3696· Sauf votre bon plaisir. —***Ձեր հաւանութեամբ, եթէ ձեզ հաճոյ կը թուի*** ([illegible])։

3697· Sauf le respect que je vous dois. —***Հանդերձ այն մեծարանօք զոր ձեզ կը պարտիմ։***

SAUT, SAUTER

3698· De prime saut. — ***Յանկարծակի։***

3699· De plein saut. — ***Քիչ ժամանակի մէջ, յանկարծ։*** Il arriva *de plein saut* à la plus haute dignité.

3700· N'aller que par bonds et par sauts. — ***Յախուռն կերպով խօսիլ, գործել։***

3701· Faire ***կամ*** franchir le saut. — ***Յետ երկար վարանման՝ հաստատ որոշում մը տալ։***

3702· Saute mouton. — ***Տեսակ մը մանկական խաղ։*** (***Տես ի*** Cheval fondu).

3703· Sauter aux yeux. —***Աչքի զարնել։*** Il y a dans ce tableau des défauts qui *sautent aux yeux.*

3704· Faire sauter quelqu'un. — ***Մէկը պաշտօնէն ձգել։***

3705· **Faire sauter les bouteilles.** —Շատ գինի խմել ։

### SAVOIR

3706· Que je sache. —Կարծեմ, գիտնալս ։ Il n'y a personne à la maison, *que je sache.*

3707· Ne savoir rien de rien. —Բան մը չը գիտնալ ։

### SAVON

3708· Donner un savon à quelqu'un. —Խստիւ յանդիմանել զոք, աղէկ մը լուալ ։ Je vais lui *donner un savon* d'importance.

### SEC

3709· Employer le vert et le sec. —Ամէն միջոց ի գործ դնել ձեռնարկած գործին մէջ յաջողելու համար ։

3710· Boire sec. —Առանց ջուր դնելու խմել ։

3711· Un coup sec. —Ցանկարծակի տրուած հարուած, այնպէս հարկանող առարկայն հարեալ առարկային վրայ չը մնայ ։

3712· De l'argent sec. —Պատրաստ դրամ (argent comptant) ։

3713· Voir quelque chose d'un œil sec. —Առանց յուզուելու ականատես ըլլալ բանի մը ։

Ainsi donc *d'un œil sec tu verras* une femme
S'élancer à ta voix dans des gouffres de flamme.

3714· Être à sec. — Սնանկը հատանիլ, պարտուց տակի մնալ։

3715· Tout sec. — Լոկ։ Son revenu consiste *tout sec* en cinquante écus de rente.

SELLE, SELLETTE

3716· Une selle à tous chevaux. — Առած, ասացուած որ ամէն տեսակ խօսքի մէջ կը մտնէ. — Ամէն տեսակ հիւանդութեանց յարմար դեղ։

3717· Aller à la selle. — Ճեմիշ երթալ։ (Aller à la garde-robe).

3718· Tenir quelqu'un sur la sellette. — Ցատ մը հարցուփորձ ընել մէկուն բերնէն գաղտնիք մը առնելու համար։

SEMAINE

3719· Prêter à la petite semaine. — Մօտ պայմանաժամով և մեծ տոկոսով ստակ փոխ տալ։

3720· La semaine des trois jeudis. — Ծռազատկին, փետրուար 31 ին. (aux calendes grecques, à la venue des coquecigrues).

SENS

3721· Reprendre ses sens. — Ինքզինքին գալ, ուշաբերիլ։

3722· Mettre, appliquer tous ses sens à faire quelque chose. — Ամեն ջանք ի գործ դնել։

3723· De sens rassis. —Անխռով, հանդարտ մտօք։

3724· Sens dessus dessous. — Վեր ի վայր։ Renverser un objet *sens dessus dessous.*

3725· Sens devant derrière. —Հակառակ կողմէն (դեր.)։ Elle a mit son bonnet *sens devant derrière.* —Les Milanais révoltés ayant chassé la femme de Frédéric-Barberousse, montée *sens devant derrière* sur une vieille mule, l'empereur en tira la vengeance après les avoir subjugués.

## SENTIR

3726· Sentir le gousset. —Քրտինք հոտիլ։

3727· Un ouvrage qui sent l'huile. —Երկասիրութիւն մը՝ որուն համար շատ աշխատուած է։

3728· Sentir son collège. —Դպրոցական հոտիլ։ (Կ'ըսուի անփորձ երիտասարդի մը համար)։

3729· Sentir la hart. —Կախաղանի արժանի ըլլալ։

3730· Cela sent son mardi-gras. —Կ'ըսուի անվայել խօսքի մը, գործի մը համար։

## SEPTIÈME

3731· Être dans le septième ciel. —Երջանիկ ըլլալ։

## SERPE

3732· Fait à la serpe. —*Անհեթեթ*, *անշնորհ*. —*Յոռի* (*մատենագրութիւն*). —*Կոպիտ* (*մարդ*)։

## SERVIR

3733· Pour vous servir, à vous servir. —*Այո*, *հրամեր էք*։

## SI

3734· S’il en fut. —*Կարի յոյժ*։ Honnête homme *s’il en fut.*

3735· Que si. —*Իսկ եթէ*։ *Que si* vous m’objectez . . .

3736· Si tant est que. —*Եթէ ճշմարիտ է թէ*։

3737· Si ce n’est. —*Միայն*։ Il vous ressemble, *si ce n’est* qu’il est plus petit.

3738· Avec un si on mettrait Paris dans une bouteille (առակ)· —*Պատասխան՝ որով կը դատապարտուի հակատրամաբանական առաջադրութիւն մը*։ Mais si, par exemple, . . . —Ah ! *avec un si on mettrait Paris dans une bouteille.*

3739· Un homme qui n’a ni si ni mais. —*Մէկը որ պատրուակ չըփնտռեր իւր խոստման*, *պարտուց կատարումը յապաղելու համար*։

## SIÈGE

3740· Lever le siège. —*Տեղէն ելնել երթալ*։

3741· Mon siège est fait. —Բանը բանէն անցած է. անօգուտ է տուած խորհուրդդ, տեղեկութիւններդ։

SIFFLET

3742· Couper le sifflet à quelqu'un. —Պապանձեցնել։

SILLON

3743· Faire son sillon. —Օրական աշխատութիւնը, գործը կատարել։

SOI

3744· Rentrer en soi. —Զգաստանալ։

3745· Être à soi. —Անձին տէրն ըլլալ, ուրիշէն կախում չունենալ։

3746· N'être pas à soi. —Ինքզինքէն ելնել, անձին տէրը չըլլալ։ Dans l'ivresse on *n'est plus à soi.*

SOLEIL

3747· Entre deux soleils. —Առաւօտէն մինչև իրիկուն։ Voyager, marcher *entre deux soleils.*

3748· Avoir du bien au soleil. —Շատ կալուածներ ունենալ։

3749· Un déjeûner de soleil. —Կերպաս մը՝ որոյ գոյնը շուտով կը նետէ։

3750· Adorer le soleil levant. —*Նոր իշխանու-թեան մը յարգանք մատուցանել։*

## SOT

3751· Un sot en trois lettres, un sot à trente-six carats. —*Կարի յոյժ, ծայրայեղ անմիտ։* Vous êtes *un sot en trois lettres,* mon fils.

3752· Sot comme un panier. —*Միտքը բան չը կարենալ պահելու, ուսմունք չ'կարենալ առնելու չափ անմիտ։*

## SOUFFLER

3753· Souffler un emploi à quelqu'un. —*Գաղտնի դիմումներով խլել մէկէ մը պաշտօն մը՝ ո-րուն վրայ ապաւինած էր։*

## SOUFFLET

3754· Donner un soufflet à Ronsard. —*Ֆրան-սերէն լեզուին դէմ անհեթեթ սխալ մ'ընել։*

## SOUHAIT, SOUHAITER

3755· A vos souhaits. —*Առողջութի՛ւն, խեր ըլլայ (կ'ուղղուի փռնգտացողին*, Dieu vous bénisse!)։

3756· Je vous en souhaite. —*Աստուած տա՛յր որ ունենայիք. կը մաղթեմ որ ունենայք։ (Հեգ-նօրէն կ'ուղղուի մէկու մը որ դժուարին կամ ան-կարելի բաներ կը պահանջէ)։* Vous voudriez, au-

jourd'hui, un logement pour 1500 francs au centre de Paris ? Eh bien ! *je vous en souhaite.*

SOUL

3757· Manger son soûl. Կուշտ ու կուռ ուտել ։ —Il a dormi son soûl. —Ուզածին չափ քնացաւ ։ Laissez crier cet enfant tout son soûl. —Թող ուզածին չափ պոռայ այդ տղայն · —Si vous aimez le procès. il vous en donnera tout le soûl, tout votre soûl.

SOUPE

3758· Ivre comme une soupe. —Շատ գինով ։

SOURIS

3759· Souris qui n'à qu'un trou est bientôt prise (առակ) · —Այն որ պաշտպանութեան մէկ միջոց միայն ունի՝ շուտով կը յաղթուի ։

3760· C'est un nid de souris dans l'oreille d'un chat. —Անկարելի բան մ'է այդ ։

SOUVENT

3761· Le plus souvent. —Ընդհանրաբար կը գործածուի իբր բացասական պատասխան հարցման մը (հապա՞) ։ Ո՛չ, քա՛ւ լիցի ։ Lui écrirez-vous ? —Moi! lui écrire ! ah ! bien oui, *le plus souvent* !

## SUBSTANCE

3762· En substance. —*Համառօտիւ , կարճ ի կարճոյ ։* Voici *en substance* de quoi il s'agit.

## SUCRE, SUCRÉ

3763· Louanges à mi-sucre. —*Ակամայ տըրուած , կեղծ գովեստ ։*

3764· Faire la sucrée. —*Պարկեշտ՝ զգօն ձեւանալ (կնոջ վրայ խօսելով) ։* Oui, vous ne *faites* point tant *la sucrée*.

## SUR

3765· Pour sûr. —*Անշուշտ , ապահովապէս ։* *Pour sûr,* il viendra.

3766· A coup sûr. —*Ստուգիւ , անվրէպ ։* Nous réussirons *à coup sûr*.

3767· Mettre quelqu'un en lieu sûr. —*Ապահով տեղ մը դնել զոք ․ —Բանտը դնել ։*

## SYNAGOGUE

3768· Enterrer la synagogue avec honneur. —*Գործ մը , ձեռնարկած բանը աղէկ ի գլուխ հանել ։* Cet avocat a terminé sa carrière par un beau plaidoyer, il a *enterré la synagogue avec honneur*.

# T

## TABLATURE

3769· Il lui donnerait de la tablature sur cette matière. —Անկէ աւելի ճարտար է այս բանին մէջ։

3770· Entendre la tablature. — Խորամանկ ըլլալ։

3771· Donner de la tablature à quelqu'un. — Մէկուն աշխատութիւն տալ։

## TABLE

3772· Faire table rase. —Հին կարծիքները, հին սովորութիւնները մտքէն հանել։

3773· Mettre quelqu'un sous la table. —Գինովցնել։

3774· On ne vieillit point à table (առակ)· — Այս առակը՝ որ որկրամոլներուն խիստ սիրելի է՝ կը նշանակէ թէ ճաշի ատեն, սեղանին վրայ ժամանակին ինչպէս անցնիլը չ'իմացուիր։

## TABLETTE

3775· Rayez cela de vos tablettes. —Ատիկա մտքէդ հանէ, ատիկա ճշմարիտ չ'է։

## TACHE

3776· Prendre à tâche de faire une chose. —

ձգնիլ, ջանալ, . . . իրեն բան գործ ընել։ Il semble qu'il ait *pris à tâche* de me ruiner.

### TAILLIS

3777· Gagner le taillis. —Փախչելով տեղ մը ապաստանիլ։

### TALON

3778· Tirer des soupirs de ses talons. —Կեղծ հառաչներ արձակել, ինքզինքը նեղել հառաչելու համար։

3779· Montrer les talons. —Փախչիլ։

### TANNER

3780· Tanner le cuir à quelqu'un. —Ծեծել (տփել)։

### TANT

3781· Tant bien que mal. —Սանկ նանկ։

3782· Tant et plus. —Շատ։

3783· Tant plus que moins. —Գրեթէ, քիչ մը աւելի քիչ մը պակաս։ Il a dix mille livres de rente, *tant plus que moins.*

3784· Tant mieux. —Աւելի աղէկ։ Ներհակն է tant pis, աւելի գէշ։ Si cela arrive, *tant pis.* — S'il ne se corrige pas, *tant pis* pour lui. —Թէ որ ինքզինքը չ՚ուղղէ, տուրը հէխան։

### TENTALE

3785· Souffrir le supplice de Tentale. —Ձ'կարենալ յագեցնել բուռն եռանդ մը՝ որոյ առարկայն մեզ մօտ է։

Ծանօթ· —Անգութն Տանտալոս որ, չաստուածներն փորձելու համար, օր մը անոնց հրամցուցած էր իւր որդւոյն անդամներն, դատապարտուեցաւ Արամազդէն մշտնջենական անօթութեան մը և ծարաւի մը։ Լճակի մը ջուրն խոյս կուտար անդադար իւր պապակեալ շրթներէն· և երբ իւր ձեռներն կ'ուզէին բռնել իրեն մօտ կախուած պտուղներն, զայնս կրող ճիւղերն կը ցցուէին։

### TANTE

3786· Faire une visite à ma tante. —Ժողովրդական լեզուաւ կը նշանակէ գրաւատունը (mont-de-piété) գրաւ մը տանիլ ստակ փոխ առնելու համար։ Comment faire? Il n'y avait qu'une visite à *ma tante* qui pût vaincre la difficulté.

### TAPIS

3787· Mettre une affaire, une question sur le tapis. —Խնդիր մը առաջի դնել։

3788· Amuser le tapis. —Պարապ խօսքերով, պարապ բաներով ժամանակը անցնել, զբօսեցնել։ Il *amusait le tapis* pour gagner du temps.

3789· Mettre quelqu'un sur le tapis. —Մէկուն վրայօք խօսիլ։

TAS

3790· Se mettre tout en un tas. —Կծկտիլ։

TASSE

3791· Boire à la grande tasse. —Ծովը իյնալ, ծովուն մէջ խղդուիլ։

TATER

3792· Tâter le pouls à quelqu'un. —Մէկուն միտքը քննել։

3793· Tâter le terrain. —Զգուշութեամբ վար-ուիլ (կ'ըսուի նաեւ tâter le pavé)․ —Տկար սրունք ունենալ (ձիու վրայ խօսելով)։

TAU

3794· Mettre le tau à quelque chose. —Հա-ւանութիւն տալ։

TEL

3795· Tel quel. —Անշահ, անպիտան։ Il y a-vait dans cette chambre un lit *tel quel*. —Une compagnie *telle quelle*. —Des gens *tels quels*. —Իր վիճակին մէջ, նոյն պայմաններուն մէջ։ Je vous rends votre livre *tel quel*, votre somme d'argent *telle quelle*.

## TEMPS

3796· Le bon vieux temps. —*Հին ժամանակները ։*

3797· Un temps de demoiselles. —*Առանց անձրեւի և առանց արեգական օդ ։*

3798· En son temps. —*Իւր կենդանութեանը ատեն ։*

3799· De mon temps. —*Իմ երիտասարդութեանս ատեն ։*

3800· Prendre son temps. —*Ցարմար առիթը չը փախցնել.* —*Պարապ ժամերուն , հանգստեամբ զբաղիլ բանի մը ։*

3801· Prendre le temps comme il vient. — *Ժամանակին յարմարիլ, բանէ մը չը խռովիլ, դէպքերուն յարմարիլ ։*

3802· Hausser le temps. —*Շատ խմել ։*

## TENANT

3803· Les tenants et les aboutissants d'une affaire. —*Գործոյ մը պարագայները , հանգամանքը ։*

## TENIR

3804· En tenir· —*Խաբուիլ.* —*Խմած ըլլալ ։* Il a bu plus que de raison, il *en tient*. —*Կնոջ մը զարնուիլ ։* Il *en tient* pour cette jeune fille.

3805· Tenir pour quelqu'un, pour quelque chose. —*Մէկու մը, բանի մը թէր ելնել։*

3806· Qu'à cela ne tienne·· —*Թող ասիկա արգելք մը չըլլայ · (գործը թող ասոր մնայ, ուզածդ, ուզածն այդ ըլլայ)։* S'il n'exige qu'une visite de ma part, *qu'à cela ne tienne.*

3807· Tenir quelque chose de son père, de sa mère. —*Հօրը, մօրը ելած ըլլալ (բնաւորութեան մէկ կողմովը, ինչպէս երկչոտութեամբ, ընթերցասիրութեամբ, եւն)։* Il est timide, il *tient* cela de son père. —Cet enfant *tient* de son père et de sa mére. —Il a de qui *tenir, ծնողացը ելած է։*

3808· Promettre et tenir sont *կամ* c'est deux (առակ) · —*Ա՛յլ է խոստանալ, ա՛յլ է կատարել։*

3809· Un tiens vaut mieux que deux tu l'auras (առակ) · —*Այսօրուան հաւը վաղուան սագէն աղէկ է։*

3810· Il n'y a rien qui tienne. —*Ոչինչ պիտի կարենայ արգիլել զիս որոշումս ի գործ դնելէ։*

### TENTE

3811· Se retirer sous sa tente. —*Բարկութենէն կամ դժկամակութենէն գործէ մը քաշուիլ։*

### TERRAIN

3812· Gagner le terrain. —*Քիչ քիչ գործի մը մէջ յառաջանալ։*

3813· Connaître le terrain. —Դիմացինին ի՛նչ տեսակ բնաւորութեան տէր ըլլալը գիտնալ։ Je m'attachai à *connaître le terrain.*

3814· Disputer le terrain. —Իր կամ այլոց կարծիքը, օգուտը աղէկ պաշտպանել։

## TERRE

3815· Terre à terre. —Հետեւակ կերպով (խօսիլ, գրել)։

3816· Ses paroles ne tombèrent point à terre. —Իր խօսքերն անօգուտ չ՚եղան, յօդս չ՚ցնդեցան։

3817· Battre quelqu'un à terre. —Ծեծել զայն որ արդէն աղէկ ծեծ կերած է. պարտելոյն չը խնայել։

3818· Faire perdre terre à quelqu'un (dans une discussion). —Պապանձեցնել զոք։

3819· Il a peur que terre ne lui manque. —Սովէ, չքաւորութենէ կը վախնայ. (ագահի մը վրայ խօսելով)։

3820· Que la terre lui soit légère! —Աստուած ողորմի, լոյս իջնէ հոգւոյն։

## TETE

3821· Tête baissée. —Յախուռն, անխորհրդաբար. —Աներկիւղ, քաջութեամբ (գործի մը ձեռնարկել)։

3822· Avoir quelqu'un en tête. —*Մէկը իրեն ոսոխ, հակառակորդ ունենալ։* Turenne *avait en tête* Montecuculli. —Dans cette terrible journée. . . où, avec l'élite des troupes, il *avait en tête* un général si pressant.

3823· Rompre la tête à quelqu'un. —*Մէկուն գլուխը տանիլ, ճաթեցնել։*

3824· Le poisson commence toujours à sentir par la tête (առակ)· —*Ձուկը գլուխէն կ'սկսի հոտիլ (պալըգ պաշտան գօգար)։*

3825· Faire tête à quelqu'un. —*Գլուխ վեր–ցնել, հակառակիլ մէկուն։* Monsieur, l'autre jour votre fils a *tenu tête* d'une façon fort inconvenante à son professeur de latin, en pleine classe, devant tous ses camarades.

3826· Piquer une tête. —*Գլխիվայր ջուրը նետ–ուիլ։*

TIMBRE

3827· Avoir le timbre fêlé, *կամ* être timbré. —*Ուղեղը ճաթած, խենդուկ ըլլալ։*

TINTER

3828· Le cerveau lui tinte. —*Ուղեղը ճաթած է։*

TIRER

3829· Tirer ses chausses, ses grègues. —*Փախչիլ։*

3830· Tirer une carotte à quelqu'un. —*Մէկէ մը ստակ փրցնել, սուտ պատրուակներով։*

## TO

3831· To be or not to be (դու պի օր նօթ դու պի)· —*Այս անգղիարէն բառերն, որ Շէյքսբիրի Համլէդի մենախօսութեան առաջին տողն են, կը նշանակեն* ըլլալ կամ չըլլալ։ *Կը նշանակէ կացութիւն մը՝ յորում անհատի մը, ազգի մը գոյութիւնն իսկ անկայուն է։* L'existence de Rome était mise en question, il s'agissait pour elle d'être ou de n'être plus, *to be or not to be.*

## TOCSIN

3832· Sonner le tocsin sur quelqu'un. —*Ամբոխն մէկուն դէմ գրգռել։*

## TOILE

3833· Vous parlez trop, vous n'aurez pas ma toile. —*Այս խօսքը կ'ուղղուի շատախօսի մը՝ որ կը ջանայ շողոքորթիչ խօսքերով զմեզ հրապուրել։*

Ծանօթ. —*Ժան՝ փոքր ինչ տխմար մանչ մը՝ շուկայ ղրկուած էր իւր մօրը կտաւը ծախելու համար։ Իրեն պատուիրուած էր որ շատախօս կանանց չը ծախէ զայն։ Արդ, շուկային մէջ պառաւ կիներ մի այն կրցաւ գտնել իբր յաճախորդ, որոց կ'ըսէր* Դուք շատ կը խօսէք. կտաւս ձեզի չեմ ծախեր։ *Վերադար-*

ձին կուսին արձանը գտնելով՝ որ նշանակեալ թերութիւնը բնաւ չունէր, ապրանքը անոր ձգեց ։ Այս է վերի ասացուածին ծագումը ։

## TOIT

3834· Publier, prêcher sur les toits. —Ամէն տեղ, հրապարակաւ քարոզել, ըսել ։

3835· Servir quelqu'un sur les deux toits. —Մէկուն ձեռնտու ըլլալ, օգնել ։

3836· Toit à cochons *ou* à porcs. —Փոխաբերաբար կը նշանակէ աղտոտ սենեակ ։

## TOLÉRANCE

3837· Maison de tolérance. —Բոզանոց ։

## TOMBER

3838· Tomber en quenouille. —Կանանց մինակ իյնալ ։

3839· Tomber en chartre. —Նիհարանալ, ծիւրիլ ։

3840· Tomber sur quelqu'un. —Մէկուն խիստ խօսքեր ընել, պախարակել ։

## TORCHER

3841· Un homme mal torché. —Գէշ, անհեթեթ կերպով հագուած մարդ ։

3842· Cela est mal torché, est torché à la diable. —*Անփոյթ կերպով գործուած, եղած, շինուած է այս։*

### TOUPET

3843· Avoir du toupet. —*Համարձակ, յանդուգն ըլլալ։*

### TOUR

3844· Faire son tour de france. —*Գաղղիոյ բոլոր քաղաքները պտըտիլ, արուեստին մէջ կատարելագործուելու համար (շրջող արուեստաւորներու վրայ խօսելով)։*

3845· Prendre *կամ* faire le grand tour. —*Երկայն ճանբէն երթալ։*

3846· Faire le tour du cadran. —*Տասներկու ժամ քնանալ։* Vous avez *fait* deux fois *le tour du cadran*: toutes les personnes de cette maison me l'ont assuré.

3847· Il m'a joué un tour de maître Gonin. —*Ձիս խաբեց։*

### TOURNER

3848· Tourner casaque. —*Ուրիշ կողմ անցնիլ։*

3849· Tourner bride. —*Ետ դառնալ։*

3850· Et pourtant elle tourne! —*Իրաւունք ունիք, բայց . . (կը գործածուի երբ՝ առ ի յար-*

գանս՝ մէկուն կարծիքը կ'ընդունի ոք առանց սակայն իրենէն հրաժարելու)։ Il continuait de grommeler : « *Et pourtant elle tourne.* »

**Ծանօթ.** —Կալիլէոս՝ ստիպուած ըլլալով ետ առնել իւր խօսքը թէ երկիրը կը դառնայ (ինչ որ հակառակ է Ս. Գրոց), մեծ գիտունն հնազանդեցաւ արտասանելով սա բառերն E pur si muove, և սակայն կը դառնայ։

3851. Faire tourner la tête à quelqu'un. — Մէկուն խելքը գլխէն առնել։

3852. Ne savoir de quel côté se tourner. — Ի՛նչ ընելիքը չը գիտնալ։

TRAIN

3853. Tout d'un train. —Անյապաղ, անմիջապէս ։

3854. Aller grand train. —Շուտ շուտ երթալ, քայլերը խոշոր առնել. —Մեծամեծ ծախքեր ընել։

3855. Mener quelqu'un bon train, le faire aller bon train, beau կամ grand train. —Անխնայ վարուիլ մէկուն հետ ։

3856. Être en train. —Յօժարութիւն ունենալ։ Il n'*est* pas *en train* de rire. — . . . վրայ ըլլալ։ Il *est en train de* manger.

3857. Il est un peu en train. —Քիչ մը գինով է ։

### TRAINER

3858. Trainer les pieds. —Ոտքերը գետինը քսելով քալել։

3859. Trainer ses mots, ses paroles. —Շատ յամրի կերպով խօսիլ։

### TRAIT

3860. Boire á longs traits. —Շիթ շիթ, պուտ պուտ խմել։

### TRAITRE

3861. Il ne m'en a pas dit le traître mot, un traître mot. —Այդ մասին բան մը չըսաւ ինծի։

### TRAMONTANE

3862. Perdre la tramontane. —Վտանգի մը առջև շփոթած, շուարած մնալ։

### TRANCHER

3863. Trancher court. —Կարճ կապել։

3864. Trancher net. —Համառօտիւ և խստիւ խօսիլ մէկուն։

3865. Trancher du grand seigneur. —Մեծու-թիւն ծախել։

### TRAVERS

3866. A tort et à travers. —Անփնդցփեղ։ Il parle *à tort et à travers*. —Frapper à tort et à travers, յաջ և յահեակ զարնել։

3867· De long et de travers. —*Բոլորովին ։* Sot *de long et de travers.*

3868· Regarder quelqu'un de travers. —*Ծուռ ծուռ նայիլ մէկուն ։*

3869· Prendre de travers. —*Ծուռ հասկնալ ։*

### TROMPETTE

3870· Déloger sans tambour ni trompette. —*Առանց ձայն հանելու փախչիլ, կծիկը դնել ։*

3871· A gens de village, trompette de bois (առակ) · —*Գիւղացիին փայտէ շեփոր · այսինքն՝ պարզ մարդիկ քիչ ծախքով կ'զբօսնուն ։*

3872· C'est la trompette du quartier. —*Թաղին մունետիկն է ։ (Կ'ըսուի մէկու մը համար որ սովորութիւն ունի գիտցածը ամէնուն ըսելու) ։*

### TROP

3873· Trop . . . pour. —*Այնչափ որ . . . չը . . .* Il était *trop* fier *pour* céder. *Այնչափ հպարտ էր որ չ'էր զիջաներ, իւր հպարտութիւնը թոյլ չ'էր տար իրեն զիջանելու ·* Il aimait *trop* sa patrie *pour* consentir que son fils régnât jamais.

3874· Vous n'êtes pas de trop. —*Կրնաք կենալ, ձեզմէ ծածուկ խօսք չ'ունինք ։*

### TROPHÉE

3875· Faire trophée de quelque chose. —*Պանծալ ։*

3876· Faire un trou pour en boucher un autre. —Հին պարտքերը հատուցանելու համար նոր պարտք ընել։

3877· Boire comme un trou. —Կարի շատ խմել։

3878· Mettre la pièce près du trou. —Դեղը պէտք եղած տեղը չ՛դնել։

## TROUSSE, TROUSSER

3879· Être aux trousses de quelqu'un. —Հալածել։

3880· Trousser une affaire. —Գործ մը շուտով կատարել։

3881· Un compliment bien troussé. —Շնորհալից և հանճարեղ շնորհաւորութիւն մը։

## T U

3882· Être à tu et à toi avec quelqu'un. —Մէկուն հետ կարի մտերիմ, ընտանի ըլլալ։

3883· Tu quoque! —Բառ առ բառ՝ դո՛ւ ես։ (Կը գործածուի իբր բան յանդիմանութեան ուղղեալ մէկու մը՝ զոր կը զարմանամք մեր թշնամեաց մէջ տեսնելով։ Յաճախ յիշեալ բառերուն Փրանսերէնն եւս կը գործածուի, toi aussi!։) Quand le lion, vieux et mourant, vit l'âne accourir dans son antre: *Et toi aussi!* s'écria-t-il douloureusement.

Ծանօթ. —*Այս բառերն արտասանեց Կեսար, տեսնելով իւր սպանողաց թուոյն մէջ զԲրուտոս, որ իւր որդին կը համարուէր։*

3884. Tu es cet homme. —*Դու ես այդ մարդը։ (Այս բառերը կը գործածուին հասկցնելու համար մէկուն, թէ նոյն իսկ իրեն կ'ուղղուի ամբաստանութիւն մը, զոր ինքն չը հասկնալ կը ձեւացնէ։)* L'avare, au spectacle, se moque d'Harpagon[1]; un vieux Cassandre[2] se pâme de rire en voyant Géronte[3]; un joueur applaudit aux saillies de Valère[4]; un pédant trouve plaisants Trissotin[5] et Vadius[6]; une coquette s'amuse des manèges de Célimène[7]. . . Spectateur étourdi, ne ris point de ton voisin; ne regarde ni à droite ni à gauche: car *tu es cet homme.*

---

(1) Հարբակոն՝ Մոլիէռի Ագահին գլխաւոր անձն է, որոյ անունն հոմանիշ է ագահ կծծիի. Հարբակոն՝ տնտեսագիտութիւնը այն աստիճան կատարելագործութեան հասուցած է որ բարեւ չը տար այլ փոխ կու տայ. — (2) Քասանդր հին կատակերգութեանց միոյն մէջ ներկայացուած է իբր ծերունի հայր մը խաբուած իւր զաւակներէն. — (3) Ժերոնդ անունը կը նշանակէ պարզամիտ, դիւրախաբ ծերունի մը. — (3) Վալեր՝ ԺԷ. եւ ԺԸ. դարուց զաւեշտական կատակերգութեան մէջ սպասաւորի եւ խորհրդակցի դեր կատարած է. — (5) Մոլիէռի Գիտուն կանայքի անձերէն մին է Թրիսոդէն, որ տիպար մնացած է յաւակնոտ, պարծուկ պուէտի. — (6) Մոլիէռի Գիտուն կանայքի անձերէն մին է Վադիուս, որ տիպար մնացած է ինքնահաւան քերթողի. — (7) Մոլիէռի Մարդատեացի անձերէն մին է Սելիմէն, նշանաւոր իւր կծու խօսքերով, եւ տիպար մանկամարդ, գեղանի, պճնասէր, չարախօս եւ սրամիտ կնոջ։

Ծանօթ. —Նաթան մարգարէն պատմելէ յետոյ թէ անիրաւ. մարդ մը աղքատի մը միակ ոչխարն յափշտակած էր, վերոյիշեալ բառերով (որոց լատիններէնն է tu es ille vir) կը հասկցնէ Դաւթի թէ ինքն իսկ է յափշտակիչն։

## TUER

3885· Se tuer de . . . —Շարունակ . . . ընել, . . . ըսել։ Je *me tue de* vous faire signe que j'ai quelque chose à vous dire. Շարունակ ձեզ նշան կ'ընեմ որ եմ ։

3886· Se tuer le corps et l'âme. —Չարաչար աշխատիլ։

3887· Tuer le mandarin. —Ապօրէն միջոցներով եւ կամ մէկէն ի մէկ հարստանալ։ Այսպէս, երբ մէկը յանկարծ եւ առանց յայտնի պատճառի կը հարստանայ, կատակաբանութեամբ կ'ըսուի · il a tué le mandarin.

## TUILE

3888· C'est une tuile qui m'est tombée sur la tête. —Խելքէս մտքէս չ'էր անցներ որ այսպիսի փորձանք մը պիտի գայ գլխուս։

3889· Il faut laisser courir le vent par-dessus les tuiles (առակ) · —Պէտք է հպատակիլ նեղութեան մը՝ զոր չեմք կարող արգիլել։

# U

## ULTIMA

3890· Ultima ratio. —Լատին ասացուած, առուած Ռիշլիէօյի, որ կը նշանակէ «վերջին փաստ», «վերջին միջոց»։ Le duel est la plus déraisonnable des raisons; ne pourrait-on pas le stigmatiser en l'appelant l'*ultima-ratio* des fous ?

## UN

3891· Il m'en a donné d'une. —*Ձիս խաբեց*։

3892· En savoir plus d'un. —*Հնարագէտ ըլլալ*։

3893· Sur les (լե) une heure. —*Ժամը մէկին ատենները*։

## UNGUIBUS

3894· Se défendre unguibus et rostro. —*Ինքզինքն աղէկ պաշտպանել*։

## URBI

3895· Urbi et orbi. —*Այս լատիներէն բառերն՝ որոց բառական թարգմանութիւնն է «ընդ քաղաքն և ընդ տիեզերս», կը գործածուի «ամենուրեք» նշանակութեամբ*։ Publier une nouvelle *urbi et orbi, ինչպէս զուտ Ֆրանսերէն կ'ըսուի* sur les toits.

### U S

3896· Un savant en us. —Լատինագէտ իմաստակ ։

### U S E R

3897· Cet homme est bon à l'user. —Որչափ աւելի կենակցիս այդ մարդուն հետ, այնչափ աւելի կը յարգես զինքը ։

### U T I L E

3898· En temps utile. —Որոշեալ ժամանակին ։

---

## V

### V A C H E

3899· Vache à lait. —Մէկը, բան մը ուրկէ կը շահի ոք ։ Ce plaideur, ce procès est une *vache à lait* pour ce procureur. —Cet homme fait de vous une *vache à lait*.

3900· Prendre la vache et le veau (առակ). —Ուրիշէն յղի ինկած աղջկան հետ ամուսնանալ ։

3901· Bon homme, garde ta vache (առակ). —Ո՛վ մարդ, զգուշացիր, գուցէ խաբուիս ։

3902· Manger de la vache enragée. —Ցեռի ծայր չուառութեամբ ապրիլ ։

3903· Il n'est rien tel que le plancher des vaches (առակ)· —Ցամաքի վրայ ճանբորդել աւելի ապահով է քան ծովի վրայ։

3904· Parler français comme une vache espagnole. —Գաղղիարէն լեզուն խիստ գէշ խօսիլ։

3905· Être de la religion de la vache à Colas. —Կ'ըսուի այն մարդոց համար որ կիւրակէ օրերը կ'աշխատին։

### VALEUR

3906· La valeur de. —Գրեթէ։ Nous avons fait en nous promenant *la valeur de* deux lieues. —Il n'a pas bu *la valeur d'*un verre de vin.

### VALOIR

3907· Faire valoir quelqu'un. —Մէկը մեծարոյ ցուցնել։

3908· Faire valoir une chose. —Գեղեցկագոյն երեւցնել· —Կարեւոր ցուցնել· —Առաջի դնել։ Faire valoir une objection contre quelqu'un։ — Faire valoir son argent, ստակը բանեցնել։

3909· Se faire valoir. —Մեծաբանել, պարծենալ։ C'est un fanfaron qui veut *se faire valoir.*

3910· Cela ne vaut rien. —Վնասակար է· — Անիկա աղէկ նշան չէ։

3911· A valoir. —Ի հաշիւ։

3912· Vaille que vaille. —Սանկ նանկ։ Enfin, *vaille que vaille,* l'ennemi se soumet. —Ինչ ըլլայ ըլլայ։ Prenez sa promesse, *vaille que vaille* (այս իմաստով կ'ըսուի նաև tout coup vaille)։

3913· Cet homme vaut son pesant d'or. —Այս մարդը իւր ծանրութեանը չափ ոսկի կ'արժէ, այսինքն՝ շատ բարի ձիրքեր ունի։

## VAUGIRARD

3914· Comme les députés de Vaugirard. —Մէկ։ (Այս բառերն կը գործածուին կատակաբանօրէն պատասխանելու համար «Ջէկ» քանի հոգի էին հարցման։)

3915· C'est le greffier de Vaugirard, qui ne peut écrire quand on le regarde. —Կ'ըսուի անյաջողակ մէկու մը համար որ ամենաչնչին բանէն կը շփոթի։

## VAUTOUR

3916· C'est le vautour de Prométhée. —Անվերջանալի տանջանք մ'է։

Ծանօթ· —Պրոմէթէոս, երկրի տիղմէն մարդն ստեղծեց և զայն կենդանացնելու համար երկնից հուրն գողցաւ։ Արամազդ, այս գողութեան վրայ զայրացած, Կովկաս լերան վրայ գամել տուաւ զայն, ուր անգղ մը յաւիտեանս պիտի լափէր անոր լեարդը։

## VEAU

3917· Adorer le veau d'or. —Քծնիլ, գձձօրէն պատիւ ընել այնպիսի մարդոց որք հարստութենէ զատ արժանիք չ'ունին։

3918· Pleurer comme un veau. —Զնչին բանի մը համար հեկեկանօք լալ։

3919· Faire le veau. —Անհոգաբար փռուիլ։

Tandis que ce nigaud, comme un évêque assis,
*Fait le veau* sur son âne, et pense être bien sage.

3920· Faire le pied de veau à quelqu'un. —Գձձութեամբ մէկուն քծնիլ։

## VEILLE

3921· Il est à la veille de sa mort. —Մեռնելու մօտ է։

## VENDANGE

3922· Faire vendange. —Շատ ստակ շահիլ։

## VENDRE

3923· Être à quelqu'un à vendre et à dépendre. —Անձը մէկուն տրամադրութեան տակ դնել։

Vous, dont le luth harmonieux,
Fait que tous et jeunes et vieux
Sont à vous *à vendre et à dépendre.*

### VENELLE

3924· Enfiler la venelle. —Փախչիլ։ Et moi, sot que je suis, je vidais sa querelle. Tandis que le poltron *enfilait la venelle.*

### VENIR

3925· Je vous vois venir. —Միտքդ կը գուշակեմ։

3926· D'où vient que? —Ինչէ՞ն է որ։ *D'où vient qu*'il est si triste, si joyeux?

3927· Venir bien à. —Պատշաճիլ, աղէկ գալ, յարմարիլ։ Cette robe, cet habit *vient bien à* la taille.

3928· Venir à rien. —Քիչնալ։ À force de bouillir, cette sauce est *venue à rien.* —Պարապը ելնել, չը յաջողիլ։ Tous ses grands projets *viendront à rien.*

3929· Venir de . . . —Դեռ նոր, քիչ մ'առաջ, հազ չ'ըներ . . . ։ *Il vient de* mourir, *il vient de* sortir. —L'homme dont je *viens de* parler. —Je *venais de* dîner quand il est entré.

### VENT

3930· Aller selon le vent. —Ժամանակին յարմարիլ· ([illegible])

3931· Avoir vent de quelque chose. —Բան մը վրայ կասկած ունենալ։ Une fois ou deux

recteur et le proviseur ayant eu *vent de* nos conciliabules, ont voulu y être admis.

### VENTRE

3932· Avoir les yeux plus grands que le ventre. —*Ճաշի ատեն սկաւառակին մէջ աւելի միս կամ պտուղ առնել՝ քան զոր կարող է ուտել։ (Տօկ-աչգէօզլիւն ընել. Կ'ըսուի մանաւանդ տղոց համար։)*

3933· Passer sur le ventre à quelqu'un. —*Հակառակ մէկուն՝ պաշտօնի մը հասնիլ, նպատակին մէջ յաջողիլ։*

3934· Bouder contre son ventre. —*Ճաշին հետ սրդողիլ։ (Կ'ըսուի տղոց համար որ առ ի դժկամակութեան, եւն, կերակուր չ'են ուզեր)։* Pourquoi le petit ne mange-t-il pas ? —Il a boudé contre son ventre.

3935· Robe de velours, ventre de bure (առակ)· —*Կը գործածուի պարսաւելու համար այն անձերն՝ որք ամէն ինչ, իրենց ախորժակն իսկ կը զոհեն իրենց արդուզարդին։*

3936· Ventre affamé n'a point d'oreilles (առակ)· —*Անօթի մարդը բան մտիկ չըներ։*

### VÉNUS

3937· Achever la Vénus d'Apelles. —*Յաւակնութիւնը անխոհեմութեան աստիճանին հասցնել։*






VER

3938· Tuer le ver. —Կնճել։

3939· Un ver rongeur. —Ընտանեբար կ'ըսուի վարձեալ կառքի մը համար որ դուռը կ'սպասէ։

VERT

3940· Prendre quelqu'un sans vert. —Ցան-կարծակիի բերել։ C'est par sa direction que ton frère a trouvé le moment de te *prendre sans vert*.

3941· Employer le vert et le sec dans une affaire. —Ամէն հնարք ի գործ դնել։

VESTE

3942· Remporter sa կամ une veste. —Դատը կորսնցնել։

VIE

3943· Il faut faire vie qui dure. —Պէտք է խնայողութեամբ և ժուժկալութեամբ ապրիլ։ (Նոյն իմաստով կը գործածուի նաև faire feu qui dure.)

3944· Faire la vie. —Ցոփութեան մէջ ապրիլ։

VIGNE

3945· Être dans les vignes du Seigneur կամ լոկ dans les vignes. —Գինով ըլլալ։

VILAIN

3946· Graissez les bottes à un vilain, il dira

qu'on les lui brûle (առակ)· —*Ապերախտ մարդու ծառայութիւն մի մատուցաներ* (կեօնլերա էյլէյէ եարա-ձող) ։

3947· Jeu de main, jeu de vilain (առակ)· —*Ձեռաց կատակ, իշնակ կատակ*· (էլ շագասը, քէօյլիւ-շագասը) ։

## VILLE

3948· Être en ville. —*Տունը չըլլալ*։

3949· Dîner en ville. —*Ուրիշին տունը ճաշի ըլլալ*։

3950· Avoir ville gagnée. —*Ամէն դժուարութեանց, խոչընդոտի յաղթած ըլլալ*։

3951· Ville qui parlemente est à moitié rendue (առակ)· —*Մէկը որ իրեն եղած առաջարկութեանց միտք կ'ընէ, մօտ է իրեն եղած խնդիրին ընդունելու* ։

## VIN

3952· Être entre deux vins. —*Կէս գինով ըլլալ*։

3953· Avoir le vin gai, triste, etc. —*Գինովութենէն զուարթացած, տխրած, եւն ըլլալ*։ Les rois *ont* le vin moins *cruel* que la tisane.

3954· Quand le vin est tiré, il faut le boire. —*Երբ մէկը գործի սկսի, աղէկ կամ գէշ, պէտք է զայն ի գլուխ հանել*· (օյունա չըգան օյնար ։)

### VIOLON

3955· Se donner les violons. —Գոհ ըլլալ։ Se donner les violons de quelque chose. —Ինքզինքը գովել։

3956· Payer les violons. —Կոչունքի մը, հանդիսի մը ծախքերն վճարելու ստիպուած ըլլալ։

### VIRER

3957· Tourner et virer quelqu'un. —Հարցնել, հարցաքննել մէկը։

### VISIÈRE

3958· Rompre en visière avec quelqu'un. — Խստիւ ընդդիմախօսել, յանդիմանել։

3959· Donner dans la visière de quelqu'un. — Մէկը հրապուրել, սէր ներշնչել (կնոջ վրայ խօսելով)։ Elle lui a *donné dans la visière* կամ dans l'œil·

### VITRE

3960· Casser les vitres avec quelqu'un. —Համարձակօրէն, առանց որ և է խօսք խնայելու խօսիլ մէկուն հետ։

### VITULOS

3961. Il en a eu depuis Miserere jusqu'à Vitulos. —Աղէկ մը ծեծեցին, ողջէն զինքը։

## VIVANT

3962· De la vie vivante, de ma vie vivante, de votre vie vivante. —Բնաւ, երբէք ։

3963· De son vivant. —Իւր կենդանութեանը, ողջ եղած ատենը · —De ton vivant, ողջութեանդ · —De notre vivant, մեր ողջութեանը ։

## VOIE

3964· Mettre quelqu'un sur la voie. —Մէկուն օգտակար տեղեկութիւններ տալ, առաջնորդելու համար զայն իր նպատակին ։

3965· Être à bout de voie. —Որսին հետքը կորսնցնել (շանց վրայ խօսելով) · —Միջոցները, հը-նարքը հատնիլ ։

3966· Être en voie de faire quelque chose. —Բան մ'ընելու վրայ ըլլալ ։

## VOILE

3967· Mettre à la voile. —Առագաստ պարզել ։

3968· Faire voile. —Նաւարկել ։

3969· Caler la voile. —Տեղի տալ, զիջանիլ ։

3970· Mettre toutes voiles dehors. —Գեղեց-կագոյն զարդերովն պճնուիլ մէկը ընդունելու հա-մար (կանանց վրայ խօսելով) ։ La dame de Krot-tenweyer *avait mis toutes voiles dehors* pour fêter un tel personnage.

## VOLET

3971· Trié sur le volet. —Ընտրելագոյն։

## VOULOIR

3972· En vouloir à quelqu'un. —Մէկուն դէմ ոխ ունենալ։

3973· S'en vouloir. —Ինքզինքին դէմ ոխ ունենալ. զղջալ։ Je *m'en veux* d'avoir fait cela.

3974· En vouloir à quelqu'un, à quelque chose. —Մէկուն, բանի մը աչք ունենալ։ Il *en veut à* cette fille, *à* cette charge.

3975· Se faire vouloir bien de quelqu'un. —Մէկուն սիրտը գրաւել, անոր աչքը մտնել։ (Ներհակն է se faire mal vouloir de quelqu'un.)

3976· En veux-tu? en voilà. —Առատօրէն, ուզածիդ չափ։ C'était un bal magnifique; il y avait des glaces *en veux-tu? en voilà.*

## VUE

3977· A vue de pays, de nez. —Հարեւանցի։ Ces messieurs choisissent *à vue de nez,* un peu au hasard. —Ils ont été jugés *à vue de pays.* —Marcher à vue de pays. Առանց ճանբայն գիտնալու քալել։

---

# Z

## ZEST, ZESTE

3978· Cela ne vaut pas un zeste. —*Ստակ մը չ'արժեր։*

3979· Être entre le zist et le zest (լը զիստ է լը զէստ)․ —*Վարանման մէջ ըլլալ, ինչ որոշում տալը չը գիտնալ․* —*Սանկ նանկ, ոչ աղէկ ոչ գէշ ըլլալ։*

# ՎԵՐՋ